

ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9
1954 Թ.

# ՊԻՈՆԵՐ

# ՀՐԱԺԵՇՏ

Ա. ՍԱՐՈՅԱՆ

Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

Մնաք բարով խնդության ծով
Պիոներական մեր ճամբարնե՛ր,
Տուն ենք դառնում ահա այսօր,
Մեզ կանչում է դպրոցը մեր:

Մնաք բարով իրիկնային
Մեր խարույկներ բոցալեզու,
Ամառային ջերմ օրերին
Ինչքա՜ն էիք դուք մեզ հուզում:

Ինչքա՜ն ենք մենք երեկոյան
Նստել ձեր շուրջը հիացած,
Երգել խմբով, զվարթաձայն,
Ու թռչկոտել շուրջպար բռնած:

Մեր ճամբարնե՛ր, թողնում ենք ձեզ
Այս հմայիչ սարի լանջին...
Մնաք բարո՜վ, կանչում է մեզ
Դպրոցական զանգն առաջին:






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 9

# ՍԵՊՏԵՄԲԵՐ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**ԱՌԱՋԻ՛Ն ՕՐԸ**

*Ֆոտոէտյուդ Ա. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

# ԻՆՉ ԼԱՎ ԵՂԱՎ

Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ
(Վաստակավոր ուսուցիչ)

Մեր բակում բոլորը ճանաչում և սիրում են Ռուբիկին։ Նա հիանալի ընկեր է, լավ բնասեր. շատ է սիրում ծաղիկներ, ծառեր աճեցնել։

Ամեն տարի աշնանը, վերադառնալով պիոներական ճամբարից, նա իր խաղընկեր Թամարայի հետ հավաքում է բակի տղաներին ու աղջիկներին։ Նրանք տեսակավորում են ճամբարում հավաքած ծաղիկները, քարերը, միջատները և նվերներ են պատրաստում հարազատ դպրոցի համար։ Բայց երբ հերթը հասնում է նվերների բաշխմանը, Թամարան և Ռուբիկը վեճի են բռնվում։

Այս տարի վեճը նորոգվեց ճամբարում, երբ նրանք անտառում գտան նուրբ ու գեղեցիկ ծաղիկներ։

— Սրանք մեր դպրոցը կտանեմ,— ասաց Ռուբիկը։

— Չէ՛, մեր դպրոցը,— առարկեց Թամարան։

Այդ օրը ճամբար եկավ Ռուբիկի հայրը, որը Թամարայի ուսուցիչն էր։ Նրան բարևելուց հետո, Թամարան սկսեց գանգատվել։

— Ռուբիկը լավ ընկեր է։ Երեք տարի է, որ մենք միասին ենք լինում պիոներական ճամբարում. մասնակցում ենք արշավներին, խաղերին, բայց նա միշտ փորձում է մեր հավաքած կոլեկցիաների մեծ մասն իրենց դպրոցը տանել։

— Ճիշտ չէ,— ասաց Ռուբիկը։

— Ճիշտ չէ՞, բա այսօրվա ծաղիկները, որ միասին քաղեցինք, դու չվերցրի՞ր ձեր դըպրոցի համար։

Ռուբիկի հայրը ուշադիր լսելով Թամարայի գանգատը, ժպտալով ասաց.

— Դու ճիշտ ես ասում, Թամա՛րա, նվերները պետք է հավասարապես բաշխել. բայց այս տարի այլևս վիճելու հարկ չի լինի։ Ի՞նչ է, դուք չե՞ք իմացել Սովետական կառավարության որոշումը։ Այս տարվանից 1—9-րդ դասարանների տղաներն ու աղջիկները սովորելու են միասին։ Դու և Ռուբիկը կսովորեք նույն դպրոցում, նույնիսկ՝ միևնույն դասարանում։ Դուք կարող եք խնդրել, որ ձեզ նստեցնեն մի նստարանի վրա։

— Ի՜նչ լավ է,— չկարողանալով ուրախությունը զսպել՝ բացականչեց Թամարան և նայեց Ռուբիկին։

— Դուք կլինեք պիոներական մի ջոկատում և երկուսդ էլ այս տարի կընդունվեք Լենինյան կոմերիտմիության շարքերը,— շարունակեց հայրը.— դրա համար հարկավոր է ավելի լավ սովորել, լինել կարգապահ, ազնիվ ընկերներ, հարգել և օգնել միմյանց։

Ուշ երեկոյան Ռուբիկի հայրը հրաժեշտ տվեց երեխաներին ու վերադարձավ քաղաք։

Երեկոյան ճամբարում խարույկ եղավ։ Պիոներները խարույկի շուրջը բոլորած խոսում էին իրենց հետագա անելիքների մասին։

— Հիմա մեր թատերական խմբակը լավ կաշխատի, աղջիկներ շատ կլինեն,— ասաց Հարությունը։

— Խմբակները, աշխատանքային սենյակները, բոլորը լավ կաշխատեն։ Կկազմակերպենք մրցումներ, խաղեր,— ոգևորված խոսեց Հակոբը։

Երեխաները ճիշտ էին ասում։

Պիոներական ջոկատների և օղակների աշխատանքը նույնպես բովանդակալից և ուրախ կանցնի։ Պիոներական ակտիվի կազմում նրանք կընտրեն գործունյա աղջիկների ու տղաների։

Սեպտեմբերի մեկին մենք Թամարային ու Ռուբիկին հանդիպեցինք 7-րդ դասարանում, նստած կողք-կողքի։ Թվում էր, թե նրանք միշտ էլ միասին էին սովորել։ Այդպես էր նաև մեր քաղաքների շատ դպրոցներում։

Այսպես, իրագործվեց Սովետական կառավարության որոշումը տղաների և աղջիկների համատեղ ուսման մասին։





# ԸՆԿԵՐՆԵՐԸ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Վեցերորդ ջոկատի պատանի բնասերները վերադարձան արշավից։

Տղաները բերել էին մի հերբարիում, սպիրտի մեջ դրած մի բարակ օձ, ստվարաթղթե մի մեծ արկղ լիքը միջատներ և մի կենդանի ոզնի։

Այս ամենն այնքան ոգևորել էր տղաներին, որ նրանք իրենց հերոսներ էին կարծում. բայց ճամբարում սառը ջուր լցրին նրանց ոգևորության վրա։ Պարզվեց, որ աղջիկները շատ ավելի հետաքրքիր էքսպոնատներ ունեն։ Նրանք ոզնիների մի ամբողջ ընտանիք էին բերել, մի վայրի կատվի ձագ, իսկ հերբարիումը այնքան հարուստ էր, որ վեցերորդ ջոկատի պատանի բնասերները փորձ էլ չարեցին իրենց բերածով պարծենալու։

Տղաներից ամեն մեկը յուրովի ընդունեց աղջիկների հաղթանակը։ Մի մասը խոհեմաբար լռում էր, ոմանք «սպառնում» էին, թե հաջորդ արշավի ժամանակ «հակառակորդին» պարտության կմատնեն, իսկ մի մասը ուղղակի բարկացած էր։ Այդպիսիների թվում էր Վազգենը, մի փոքրամարմին, շարժուն տղա, որ ջոկատում սրամիտի համբավ ուներ։



Արի նորից խաղանք:

Վազգենը նախ փորձեց կասկածի տակ առնել աղջիկների աշխատանքը։

— Բոլորը դո՞ւք եք հավաքել։

— Մենք, այո։

— Չէ, չէ՛ մի...

— Իսկ կատվի ձա՞գը։

— Կատվի ձագն էլ։

— Դե, դա ի՞նչ է որ,— փնթփնթաց Վազգենը,— դա պարզապես տնային կատու է։

Բայց վայրի կատվի ձագն այնքան էր տարբերվում ընտանի կատվից, որ բոլոր շրջապատողները ծիծաղեցին, իսկ փոքրիկ Համլիկը ծաղրանքով ասաց.

— Ա՛խ դու, տնային կատու։

***

Ճամբարը վաղուց էր պատրաստվում շախմատային մրցումներին։ Սկզբում մրցումը գնում էր ջոկատների ներսում։ Մի քանի օր շարունակ պաշտոնական դատավորներն ու ինքնակոչ օրենսգետները վիճում էին իրար հետ։

— Իսկ նա զինվորը ետ վերցնելու իրավունք ունե՞ր, ասա, իրավունք ունե՞ր...

— Է՜, դու շախմատից բան չես հասկանում։

— Հա՛, չեմ հասկանում, դե, արի խաղանք։

Եվ դատավորներն իրենց պարտականությունները մոռացած շախմատային պատերազմ էին մղում։

Վերջապես պարզվեց, թե ովքեր են լավագույն շախմատիստները։ Աղջիկների մեջ հաղթել էր Հասմիկը, իսկ տղաների չեմպիոնը Վազգենն էր։

Հաղթողները միմյանց հետ մրցելու էին ճամբարի չեմպիոնի կոչումը նվաճելու համար։

Ամբողջ ճամբարը հավաքվել էր բացատում դրված սեղանի շուրջը։ Իրար դեմ նստած Հասմիկն ու Վազգենը մտասույզ նայում էին շախմատային դաշտին։ Արդեն մի ժամից ավելի էր, ինչ խաղն սկսվել էր։ Հավաքված բազմության մի փոքրիկ մասն էր կարողանում հետևել խաղին։ Վերջին շարքերում կանգնածները միայն փսփսում էին և գուշակություններ անում։

— Հասմիկը կտանի…

— Է՜, դու մեր Վազգենին դեռ չես ճանաչում։

Սկզբից Վազգենի գործը լավ էր գնում։ Հենց առաջին քայլերից նա հասկացավ, որ Հասմիկն իրենից վատ է խաղում։ Դրանում նա ավելի համոզվեց, երբ «հակառակորդը» նրա խորամանկությունը չնկատելով տանուլ տվեց մի զինվոր։

Վազգենը թեթևացած շունչ քաշեց և սկսեց ավելի համարձակ խաղալ։ Խաղակեսին շրջապատողների համար արդեն պարզ էր, որ ճամբարի չեմպիոնը Վազգենն է լինելու։ Բայց հանկարծ լսվեց Հասմիկի ձայնը.

— Շա՛խ։

Վազգենը շփոթվեց անսպասելիությունից։ Նրա թագավորը գնալու տեղ չուներ։

— Ջա՜ն, խաբեցի, խաբեցի՜,— ուրախ ծափ էր տալիս Հասմիկը։

— Ես չնկատեցի… արի նորից խաղանք,— բարկացած ասաց Վազգենը։

— Չէ, վախենում եմ. դու կտանես, դու լավ ես խաղում,— անկեղծորեն խոստովանեց Հասմիկն ու վեր կացավ։

⁂

Անցան ճամբարային ուրախ օրերը։ Եկավ սեպտեմբերի մեկը։ Դպրոցներում սկսվեց ուսումնական տարին։

Դպրոցում էլ Վազգենին անակնկալ էր սպասում։ Նա դեռ մի ամիս առաջ էր իմացել, որ այսուհետև աղջիկներն ու տղաները միասին են սովորելու։ Այժմ էլ հայտնի դարձավ, որ Հասմիկը հենց իրենց դասարանում է լինելու. ավելին՝ դասղեկը նրանց նստեցրեց միևնույն նստարանին։



Ընկերություն չէր ստացվում։

— Ի՜նչ լավ է, որ քեզ մոտ եմ նստելու,— ուրախ շշնջաց Հասմիկը։

— Մի՛ խանգարիր,— շշնջաց Վազգենը։

— Ճիշտ է,— համաձայնեց Հասմիկը,— դասամիջոցին կխոսենք։

— Շատ պետք է,— փնթփնթաց տղան և երեսը շուռ տվեց։

Դասն անցավ, օրն էլ անցավ։ Անցավ մի շաբաթ։ Մի քանի անգամ Հասմիկը փորձեց խոսել Վազգենի հետ։ Երևում էր, որ ուրախ ու ընկերական աղջիկ է։ Մի օր նա ասաց.

— Ես երկու խնձոր ունեմ, մեկը՝ քեզ, մեկը՝ ինձ։

—Հարկավոր չէ,— կարճ կտրեց Վազգենը։

Մի ուրիշ անգամ խնդրեց.

— Արի մաթեմատիկան միասին պարապենք, լա՞վ:
— Ինչո՞ւ:
— Ես մի քիչ դժվարանում եմ:
— Չէ, չեմ ուզում:
Ընկերություն չէր ստացվում:

***

Փողոցում հանդիպեցին պատահաբար, երկուսն էլ դպրոց էին գնում:
— Բարև... վա՜յ, դու այս կողմերո՞ւմ ես ապրում,— ասաց Համիկը:
— Այս կողմերում:
— Իսկ ես՝ ոչ: Այսօր ես տանից չեմ գալիս: Գնացել էի մորաքրոջս մոտ: Մորաքույրս հիվանդ է, իսկ նրա ամուսինը Մոսկվայում է և նրան խնամող չկա..
Ամբողջ ճանապարհին Համիկը զվարթ բլբլում էր, իսկ Վազգենը լուռ լսում էր նրան: Սկզբում ուզում էր առաջ անցնել, բայց հետո, չգիտես ինչու, այդպես չարեց: Նրան դուր էր գալիս, որ Համիկն այդքան ուրախ է, սրտաբաց, որ նա խնամում է հիվանդ մորաքրոջը...
— Վազգե՛ն, արի միասին պարապենք, էլի. դու ինձ կօգնես մաթեմատիկայից, իսկ ես քեզ ռուսաց լեզվից... Ա՛յ, անցյալ անգամ երեք ստացար...
Հանկարծ Համիկը լռեց և քամու նման դեպի փողոցի կենտրոնը սլացավ: Վազգենը սուլոցի նման մի ձայն լսեց: Երբ նա շուռ եկավ, մարդատար ավտոմեքենան կանգնած էր փողոցի կենտրոնում: Մեքենայի ետևը, ասֆալտի վրա, երևում էին անիվների հետքերը՝ երկու գորշ, փայլուն ժապավեն: Մեքենայի առաջ մի փոքրիկ երեխա գրկին՝ շփոթված կանգնած էր Համիկը: Նրա պայուսակն ընկած էր մեքենայի անիվի մոտ:
Մարդիկ իսկույն հավաքվեցին: Մի երիտասարդ կին և՛ ժպտում էր, և՛ լալիս, իսկ այս ու այն կողմից ասում էին.
— Վայ, վայ, վա՜յ... երեխան տակն էր ընկնելու:
Դուրս եկավ նաև մեքենայի շոֆերը: Նա էլ էր շփոթված. ժպտում էր, իսկ հետո կըշտամբանքով նայում երիտասարդ կնոջը՝ ինքն էլ նրա նման գունատ:
Մարդիկ հանգստացած ցրվեցին, ավտոմեքենան գնաց: Վախեցած, բայց երջանիկ մայրը տարավ երեխային, Վազգենն ու Համիկն էլ շարունակեցին իրենց ճանապարհը:
Երբ դպրոց էին հասել, Վազգենն ասաց.
— Դու սրտոտ ես,— հետո զգալով, որ այդ չէր ուզում ասել, ավելացրեց,— իսկ ես... դեմ չեմ, կարող ենք միասին պարապել մաթեմատիկայից էլ, ռուսերենից էլ...
Դասն սկսվեց: Երկու ընկեր նստած էին միևնույն նստարանին:

## ՍԵՊՏԵՄԲԵՐԻ ՄԵԿԸ

*ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ*

Սեպտեմբերի մեկն է այսօր,
Աշնանային զով առավոտ.
Խռնըվել են աղջիկ, տղա
Արձակ բակում, լայն մուտքի մոտ:

Սպասում են սրտի դողով,
Զանգի ձայնը ականջի մեջ,
Եվ աչքերում իրենց վճիտ՝
Հազար խորհուրդ, երազ ու տենչ:

Առաջին զա՛նգ, առաջին զա՛նգ,
Զանգի արծաթ դու բրբռոց,
Որ սրտերը բուռն ես հանում,
Աչքերի մեջ վառում ես բոց...

Դպրոցական շենքն է կանգնել
Մաքուր, ասես նոր լվացված,
Իր հյուրընկալ լայն դռները
Նրանց առաջ սիրով բացած:

Փողփողում է մուտքի վերև
Մի հրեղեն, ալ դրոշակ.
Մանուկներն են խումբ-խումբ մտնում
Նրա պայծառ հովանու տակ:

**Բաքվի 26 կոմիսարների սպանության**
**36-րդ տարելիցի առթիվ**

# ԲԱԼԼԱԴ ՔՍԱՆՎԵՑԻ ՄԱՍԻՆ

*(Հատվածներ)*

*ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ*

*Նկ. Ռ. ԱՎԵՏԻՍՅԱՆԻ*

Ամեն առավոտ ծեգին,
Երբ քնից զարթնում է Բաքուն
Երբ, ելած գիշերվա մեգից,
Արթնանում է կյանքը քաղաքում,
Երբ ձայնով աշխույժ ու հնչուն
Քաղաքի բոլոր մասերից
Շչակները գործի են կանչում
Պրոլետարներին,—
Քաղաքի ծայրերից բոլոր
Զգվելով, երբ շարան-շարան
Բանվորները հոծ խմբերով
Շտապում են դեպ գործարան,—
Ամեն առավոտ ծեգին,
Այդ ժամին զորշ, մխերանգ,
Զուլվելով երբին ամենքի
Քաղաքից անցնում են նրանք:

Քսանըվեց հոգի են նրանք.

Եվ խոհուն, մտազբաղ են բոլորը:
Առջևից գնում է նա—
Երկաթյա Կարմիր Կոմանդորը:
Քայլերով հաստատ, համաչափ,
Հետևում են նրան ընկերները,
Ընթանում են քայլերով շտապ,
Շտապում են դեպի վիշկաները:
Աննկատ, ձուլված ամենքին,
Քայլում են նրանք դեպի ծովը.
Ողջունում են ջրերը դեմից,
Համբուրում է հովը:

Համբուրում է դեմքերը քամին,
Շշնջում է խոսքեր հյուսիսի.
Երկաթյա շքախումբ է դա մի—
Գնում է զորահանդեսի:

***

Եվ ամեն առավոտ, երբ օրը
Խարձրանում է՝ հոգսը թևքս—
Շրջում է Կարմիր Կոմանդորը՝
Քսանհինգ ընկերներ ետևից:
Շրջում են բոլոր վիշկաները,
Մտնում են գործարան ու հանք.
Քսանըվեց կարմիր ընկերնե՛ր են,
Քսանըվեց մարտիկներ նրանք:
Զուլվելով դարձող փոկերին,
Աղմըկող ռիթմերի միջից
Խոսում են ընկերներին
Ձայներով հաստատ ու վճիտ:
Ասում են նրանք.— Տոկացե՜ք,
Տոկացե՜ք, ընկերնե՛ր անգին,
Վառվել է հորիզոնը լույս,
Առավոտը ցանկալի կյանքի:
Քանի կաք, ընկերնե՛ր, քանի կաք,
Քանի կա աշխատանքը անդուլ,
Մեր երբին վախճան չկա,
Մեր պայծառ գործին — պարտություն...






Այս տարվա սեպտեմբեր ամսին լրանում է Սովետական Բանակի տաղանդավոր հրամանատարներից մեկի, քաղաքացիական պատերազմի լեգենդար հերոս Վ. Ի. Չապաևի մահվան 35 տարին:

Չապաևի կյանքի ու մարտական սխրագործությունների մասին գրվել են վեպեր, պատմվածքներ, ակնարկներ, հուշեր: Դրանց մեջ ամենահետաքրքիրը Դ. Ֆուրմանովի «Չապաև» վեպն է: Չապաևի կյանքից պատմվածքներ է գրել նաև գրող Ա. Կոնոնովը:

Տպագրում ենք Ա. Կոնոնովի «Կարմիր ավտոմեքենան» պատմվածքը:

*Ա. ԿՈՆՈՆՈՎ*

*Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ*

*Տափաստանային ճանապարհով մի կարմիր ավտոմեքենա էր սլանում: Ավտոմեքենայի մեջ նստած էին երկու մարդ՝ շոֆերն ու Չապաևը: Չապաևը, մեքենայի եզրին թեքված, ուշադրությամբ նայում էր դեպի հեռուն: Նրա ոտքը դրված էր գնդացիրը, որի փողն ուղղված էր հակառակ կողմ: Նրանց շուրջը տարածված էր հարթ, արևից այրված տափաստանը: Հեռվում երևում էր գյուղի ղանգակատունը:*

*— Է՜խ,— ասաց Չապաևը,— շուտով թեյ կխմե՞նք...*

*Շոֆերը գլուխը բարձրացրեց.*

*— Վատ չէր լինի հիմա թեյը,— ուրախ ասաց նա:*

*Շուտով երևացին գյուղական խրճիթները: Մի քանի րոպե հետո մեքենան կսլանա գյուղի ճանապարհով: Երևում և անհետանում էին կանաչ բանջարանոցները, խոտհարքի ցանկապատները և ինչ-որ մեկի տան սանդուղքի մոտ՝ դեղին արևածաղիկները: Ավտոմեքենայի ետևից քուլա-քուլա բարձրանում էր փոշին: Եկեղեցուց փոքր ինչ հեռու, հրապարակի մոտ, շոֆերը կանգնեցրեց ավտոմեքենան: Չապաևը վեր կացավ տեղից:*

*— Տես, հա՜, տղաները գնդացրին ձեռք չտան,— ասաց Չապաևը:*

*Փողոցում մի կին հայտնվեց:*

*— Որտե՞ղ է գյուղսովետը,— հարցրեց Չապաևը:*

*Կինը երկյուղով թափահարեց ձեռքերն ու ծլկեց: Չապաևը շուրջը նայեց ու գլխի ընկավ, որ գործերը լավ չեն գնում: Եկեղեցու մոտ կանգնած ուսադիրներով մի մարդ դիտում էր ավտոմեքենան: Դժվար չէր կռահել, որ նա սպիտակների սպա է: Աչքը մեքենայից չկտրելով, նա արձակեց գոտուց կախված պատյանը և դուրս քաշեց ատրճանակը:*

*Նրբանցքում երեք զինվոր երևացին:*

*— Շտապի՛ր,— կամացուկ ասաց Չապաևը,— մոտորն աշխատեցրու: Գյուղում սպիտակներն են:*

*Շոֆերն սկսեց գործի գցել ավտոմեքենայի դեռ չհանգած մոտորը, իսկ Չապաևը թեքվեց գնդացրի վրա: Նա գնդացրի փողը թափով ուղղեց դեպի եկեղեցին ու նշան բռնեց:*

*— Շուտ արա, թե չէ կորած ենք,— ասաց Չապաևը:*

*Այդ ժամանակ եկեղեցու մոտից, որտեղ կանգնած էր սպան, ատրճանակի կրակոց լսվեց: Գնդակն անցավ շոֆերի ականջի տակով: Բայց նա արդեն գործի էր գցել մոտորը և ցատկեց մեքենայի մեջ:*

*Մեքենան իսկույն պոկվեց տեղից և կատաղի արագությամբ առաջ սլացավ: Բոլոր կողմերից դեպի նրանց էին վազում սպի-*



Զապանը գնդացրից կրակ բացեց։

տակները։ Բայց նրանք շուտով կանգ առան։ Մեքենան միանգամից շրջվեց։ Զապանը գընդացրից կրակ բացեց։ Գնդակները կիսաշրըջանաձև թափվում էին ամբողջ փողոցի վրա։ Գյուղի ծայրում արդեն երևաց սպիտակ գվարդիականների հեծելազորը։

Ավտոմեքենան ցնցվում էր դարուփոսերն անցնելիս։ Զապանը գնդացրին կպած, անընդհատ կրակում էր։

Նրանք նորից սլանում էին կանաչ բանջարանոցների, հին ցանկապատերի մոտով։ Իսկ նրանց ետևից գալիս էին սպիտակ հեծյալները։ Շոֆերը գլուխը գրեթե կպցրել էր ղեկին և վախենում էր ետ նայել։ Նա րոպե առ րոպե սպասում էր, որ գնդակները կծակեն դողերը և այն ժամանակ՝ վերջ ամեն ինչին։ Իսկ ետևում Զապանի գնդացիրը կրակում էր մեկընդմեջ, կամ հաճախակի, ցնցելով մեքենայի ամբողջ թափքը։ Հանկարծ գնդացիրը լռեց։ Շոֆերը լըսեց Զապանի մի փոքր խռպոտած ձայնը։

— Փամփուշտները վերջացան...

Ավտոմեքենան արդեն սըլանում էր հարթ տափաստանով։ Սպիտակ հեծյալները հեռու էին մնացել։ Նրանք հասկացան, որ արագընթաց ավտոմեքենային չեն հասնի, ետ դարձան՝ հավաքելու սպանվածներին ու վիրավորներին։ Հանկարծ Զապանը ծիծաղեց.

— Ա՛յ թե լավ թեյեցի՜նք...

Շոֆերը չլսեց, որովհետև ավտոմեքենան սլանում էր շատ արագ։ Քամին վզզում էր նրա ականջների մեջ և խեղդում Զապանի ձայնը։ Երբ մեքենան սկսեց դանդաղ ընթանալ, շոֆերը լսեց.

Ծովերով, ալիքներո՜վ,
Այսօր այստեղ, վաղը այնտեղ...
Ծո-վե...րո՜վ...

Շոֆերը ետ նայեց։ Զապանը ձեռքը դրած գնդացրի տաք փողի վրա երգում էր և կկոցում կապույտ ու խոհուն աչքերը։

Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ

# ՄԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՔԱՐԻ ՎՐԱ

Լ. ՀՈՒՐՈՒՆՑ

Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ

(Ավանդություն)

Այս բանը պատահել է շատ վաղ ժամանակներում։ Մեր կողմերում սոսկալի երաշտ է եղել։ Մարդիկ այն ժամանակ հավատում էին ամեն ինչի։ Եվ ահա, այն ժամանակների սովորության համաձայն, հավաքվում են ու որոշում զոհեր մատուցել աստծո գութը շարժելու համար։ Ամբողջ գյուղով մի գեր ոչխար են գնում ու տանում մատաղ անելու։ Մինչ ոչխարի միսը եփվում էր հսկա կաթսայի մեջ, մարդիկ նստոտել էին սրբազան ծառի տակ (դա զոհ մատուցելու տեղն էր) և զրույց էին անում։ Ծառի ճյուղերին, ինչպես միշտ, կային շատ թռչուններ, որոնք հավաքվել էին այդտեղ՝ իրենց բաժինն ստանալու։ Անհանգիստ աղմուկով և թռչնային ցնծությամբ նրանք սպասում էին, որ ժա-

մանակը գա, որպեսզի փշրանքներ հավաքեն։

Վշտի ու հոգսի մեջ թաղված մարդիկ երևի ամենևին ուշադրություն չէին դարձնի այդ թռչունների վրա, եթե նրանց մեջ չլիներ մեկը…

Բոլոր թռչուններն էլ ծառի վրա ծլվլում էին, գեղգեղում զանազան ձայներով. բայց նրանց մեջ կար մեկը, որի ձայնը ամենից բարձրն էր։ Դա սարյակն էր։ Մի սովորական սարյակ, որից շատ կան մեր կողմերում։

Ամեն թռչուն իր բնավորությունն ունի։ Կտեսնես՝ մեկը զարմացնում է քեզ խատուտիկ փետուրները փքելով կամ փափլիկ փումփուլը ցույց տալով, մյուսը տեսքով գեղեցիկ չի, բայց հիանալի երգիչ է և զիլ ձայն ունի, իսկ ինքը չի երևում։

Մեր սարյակը երգեցիկ թռչուն է։ Նա պճնվելու կարիք չունի։ Դրա համար էլ ոչ նրան, ոչ էլ երգեցիկ թռչունների թագուհի սոխակին ոչ մի տեղ չես տեսնի։ Բայց ահա, այս սարյակը ճյուղից ճյուղ է ցատկում, շարունակ ճռվողում է, ճռվողում. ասես ջանում է իր թռչնային լեզվով ինչ-որ բան ասել մարդկանց և կարծես բարանալով, որ իրեն չեն հասկանում, ավելի ու ավելի ցած է իջնում ու անընդհատ ծլծլում։ Գետնին փռած սփռոցի շուրջը նստած ու հացկերույթին սպասող մարդկանցից մեկը քար է վերցնում, որ նետի սարյակի վրա, բայց մի ծերունի, ամենատարիքավորը ներկաներից, բռնում է նրա ձեռքը։

— Այդ թռչունը մի բան է ուզում հայտնել մեզ,— ասում է նա.— թե չէ նա իր թաքստոցից ցած չէր իջնի։

Սարյակը լռեց, և մարդիկ իսկույն մոռացան նրան։ Զրույցը նորից շարունակվեց։

Բայց սարյակը լռել էր միայն մի րոպեով, ասես նրա համար, որ մարդիկ ժամանակ ունենան խորհելու ծերունու ասածի մասին։ Մի րոպե անց նա նորից սկսում է իր տագնապալի ճռվողյունը՝ այս անգամ արդեն ավելի ցածր ճյուղերի վրայից։ Էլի մեկը մի քար է վերցնում, բայց նույն ծերունին դարձյալ արգելում է նրան։

— Չհամարձակվե՛ս,— խստորեն հրամայում է նա.— Թռչնակը քեզ չի խանգարում։

Վերջապես, երբ միսն արդեն եփված էր և խոհարարը շերեփը ձեռքին մոտեցավ կաթսային, որ ամանները լցնի, սարյակն այնպիսի աղաղակ բարձրացրեց, որ ամենաքար սիրտն էլ կարող էր շարժել։ Վերջին անգամ աղեկտուր ճիչ արձակելով նա թևերը ծալեց և իր բարձունքից քարի պես նետվեց եռացող կաթսայի մեջ։

Այն ժամանակ ծերունին շտապ մոտեցավ կաթսային, շերեփն առավ շփոթված խոհա-



…Կաթսայից հանեց մի խաշված օձ։

րարի ձեռքից և կաթսայից հանեց մի խաշված օձ։

Այսպես, ահա, բարեկամներս, սարյակն իր կյանքի գնով փրկեց մարդկանց կյանքը։

Եթե պատահի, որ ձեզանից որևէ մեկը գա մեզ մոտ՝ Լոռի, ես նրան ցույց կտամ այդ անմահ թռչունի շիրիմը։ Իմ նախնիները նրան թաղել են հենց իր սխրագործության տեղը, նույն սրբազան ծառի տակ, իսկ շիրմաքարի վրա գրել են.

«Այստեղ թաղված է մի հասարակ թռչուն, որը, սակայն, մեծ սիրտ ուներ»։

Անցորդ, կանգ առ և նայիր այդ տապանագրին։

# ՀՆՁԻ՛Ր, ՎԼԱԴԻՄԻ՛Ր, ՀՆՁԻ՛Ր

*Ս. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ*

*Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ*

Գեղեցիկ լեռնաշխարհ է Լոռին: Ուր կողմը նայես՝ ալպյան ծաղկառատ մարգագետիններ, զմրուխտավառ լեռներ, սաղարթախիտ անտառներ ու անդնդախոր ձորեր են, որոնց վրա դեռ վաղ առավոտից ճախրում են արծիվներն ու բազեները:

Լեռնալանջերի զմրուխտ կանաչի մեջ վաղորդյան զեփյուռից օրօրվում են բոցավառ կակաչները, վարդագույն երիցուկներն ու ծիրանագույն նարգիզները: Օդը լցվում է թռչունների դայլայլով:

Սարահարթերի վրա փռված են աշնանացան ցորենի ոսկեգույն արտերը: Սարալանջերին՝ կանաչ մարգագետիններին զուգահեռ ձգվում են սև ցելեր ու կղմինդրով ծածկված գյուղական տնակները:

Ահա ցորենի ոսկեծուփ ծովի միջով լողում է հսկա կոմբայնը: Նա հնձում է առատ հացահատիկ: Հզոր մեքենան շռռալով առաջ է շարժվում: Նրա կողքից ընթացող ավտոմեքենայի մեջ, հալված պղնձի նման, անընդհատ հոսում է «Արմենուհի» ցորենի շիկագույն առվակը:

Կոմբայնի ետևից մի շղթա կազմած առաջանում են պիոներները՝ նրանք գոգնոցների կամ տոպրակների



*Հնձի՛ր, Վլադիմի՛ր, հնձի՛ր*

մեջ հավաքում են արտում հատ ու կենտ ընկած հասկերը:

Պատանի տղաներն ու աղջիկները օգնում են կոլտնտեսությանը, որպեսզի ցորենի ոչ մի հասկ, ոչ մի հատիկ չկորչի: Նրանք արդեն հինգ հարյուր կիլոգրամ հասկ են հավաքել և մրցման հրավիրել հարևան գյուղի պիոներներին:

Երբ կոմբայնը մոտեցավ մեզ, կոմբայնավարը մի պահ կանգնեցրեց մեքենան, և օգնականը սկսեց յուղել կոմբայնի մասերը: Այդ միջոցին կոմբայնավարն էլ ցած իջավ: Մենք մոտեցանք նրան: Երբ կոլտնտեսության նախագահը մեզ ուզում էր ծանոթացնել նրա հետ, ես մի րոպե նայեցի երիտասարդ կոմբայնավարի դեմքին և անակնկալի եկած բացականչեցի.

— Վլադիմի՛ր, այդ դո՞ւ ես, սիրելի Վլադիմի՛ր...

Ու մենք գրկախառնվեցինք: Ինչպիսի՜ երջանիկ պատահականություն: Եվ հիշելով մոտավոր անցյալի մի դեպք՝ ես գոչեցի.

— Հնձի՛ր, Վլադիմի՛ր, հնձի՛ր...

Կոմբայնավարի թուխ աչքերը փայլեցին:

— Ուրեմն դուք հին ընկերնե՞ր եք,— ուրախ ասաց նախագահը:

— Այո, մենք հին ընկերներ ենք, ռազմաճակատային ընկերներ,— պատասխանեցի ես:

— Լավ է, որ հին ընկերներ եք, բայց ես նորից կարող եմ ծանոթացնել ձեզ Վլադիմիրի հետ,— ավելացրեց նախագահը: Ծանոթացիր իր պլանը կրկնակի կատարող, փոխանցիկ դրոշը նվաճած կոմբայնավար Վլադիմիր Թոռոսյանի հետ:

Ես նորից պինդ սեղմեցի ընկերոջս ձեռքը: Մենք պայմանավորվեցինք երեկոյան հանդիպել:

Վլադիմիրը բարձրացավ կոմբայնի ղեկի մոտ և նոր թափով ու եռանդով սկսեց հնձել: Իսկ ես հին հիշողություններով տարված՝ կոմբայնավարի ետևից նորից բացականչեցի.

— Հնձի՛ր, Վլադիմի՛ր, հնձի՛ր...

* * *

Վլադիմիր Թոռոսյանին ես ծանոթացել էի Թամանի ազատագրման համար մղվող մարտերի ժամանակ: Որպես խիզախ գնդացրորդ նա հռչակվել էր ամբողջ զորամասում: Նրա սխրագործությունների մասին մի քանի անգամ գրվել էր ռազմաճակատային թերթերում, տպվել էր լուսանկարը:

Հետապնդելով թշնամուն, մեր զորամասը Թամանում առաջ էր շարժվում: Արդեն հասել էինք Գոռնայա Վեսելովկա գյուղի մատույցները: Սակայն թշնամին ամրացել էր գյուղի մոտ, անտառապատ բարձունքում և զենքի բոլոր տեսակներից կրակելով՝ արգելակում էր մեր զորամասի առաջխաղացումը:

Գնդացրային վաշտի հրամանատար ավագ լեյտենանտ Շևչենկոն, որ անհանգիստ բնավորություն ուներ, սաստիկ փոթորկվել էր: Նա ուզում էր շուտ ճնշել թշնամու դիմադրությունը և ճանապարհ բաց անել զորամասերի համար:

— Թշնամուն պիտի հարվածել այնպես, որ նա

չկարողանա շունչ քաշել,— ասում էր երիտասարդ հրամանատարը:

Ճակատամարտը երկարեց: Թշնամու ուժեղ կրակից վիրավորվեցին մեր ստորաբաժանման մի քանի մարտիկներ: Ավագ լեյտենանտ Շևչենկոն իր խրամատում այլևս չկարողացավ նստել: Նա առաջ գնաց, հեռադիտակը ձեռքին ուսումնասիրեց թշնամու կրակային կետերը, աջակողմյան հատվածից ուժեղացրեց ճնշումը հիտլերականների վրա և բլուրների մոտով վեր մագլցեց:

Հրամանատարը սողեսող մոտեցավ իր գնդացրորդին և հրաձգության աղմուկի տակ գոռաց.

— Հնձի՛ր, Վլադիմի՛ր, հնձի՛ր սրիկաներին...

Կրակն ուժեղացնելով՝ գնդացրորդը լռեցրեց թշնամու մի քանի կրակային կետեր և քայքայեց թշնամու պաշտպանությունը:

Բայց ահա, ինչ հետո, մոտիկ մի տեղում պայթեց ականը և ավագ լեյտենանտ Շևչենկոն մի քանի տեղից ծանր վիրավոր, արյունլվա ընկավ գետին:

Վլադիմիրն անմիջապես մոտեցավ նրան: Նա գրկեց մահամերձ հրամանատարի գլուխը:

Շևչենկոն բաց արեց նվաղուն աչքերը և հազիվ շշնջաց.

— Հնձի՛ր, Վլադիմի՛ր, հնձի՛ր սրի...

Ու Վլադիմիրի գրկում հավետ փակեց աչքերը...

Սրբազան վրեժի զգացումով՝ Վլադիմիրը նորից շտապեց իր գնդացրի մոտ և սկսեց անողոք հնձել թշնամուն: Հիտլերականները շուտով փախուստի դիմեցին:

Գորնայա Վեսելովկան ամբողջովին մաքրվեց թշնամուց: Կարճ ժամանակամիջոցում ազատագրվեց ամբողջ Թամանը:

Այդ օրվանից անցել է տասը տարուց ավելի: Եվ ահա ես նորից եմ տեսնում իմ ռազմիկ ընկերոջը՝ Վլադիմիր Թորոսյանին, այս անգամ արդեն համայնական արտերը հնձելիս:

— Հնձի՛ր, Վլադիմի՛ր, հնձի՛ր խաղաղության բերքը...



# ՊԱՏԱՆԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՆԵՐԻ ՁԱՅՆԸ

## ԱՌՈՒՆ

Աղմկում է անդադար
Փոքրիկ առուն մեր այգում,
Կարծես երգում է կայտառ
Ու աշխատում օրն ի բուն:

Նա հոսում է ու ջրում
Կանաչ մարգեր ու այգի.
Ու չգիտե, որ կյանքում
Գործ է անում անհագին:

## ԱՇՈՒՆ

Դեղնել են արդեն
Այգի ու անտառ,
Խոր քուն է մտել
Առվակը կայտառ:

Դաշտերում բեղուն
Պաղ հովն է փչում,
Մրգերով հասուն
Այգին է շնչում:

Աշուն է լուսե,
Աշուն է, հեյ ջա՜ն...
Խինդով է լցվել
Դպրոցի ճամփան:

*ՌՈՒԲԻԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*
*(47-րդ դպրոցի աշակերտ)*

## ԳԻՇԵՐ

Իջնում է գիշեր
Սարերի ուսին,
Փայլում է վերից
Արծաթագույն լուսին:
Երկրին է նայում
Երկինքը ուրախ..
Քնած է գյուղը
Անհոգ ու խաղաղ:

*ՎԱՉԱԳԱՆ ՄԱՆՈՒԿՅԱՆ*
*(Էլարի դպրոցի աշակերտ)*

# ԱՌԱՋԻՆ ԱՅՑԵԼՈՒԹՅՈՒՆ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Խալի՛տ, նայիր Մորժոտին[1]) բա՞ց է, թե՞ չէ։

Խալիտը դուրս վազեց։ Լերկ սարի ժայռոտ կատարը մաքուր էր. միայն մի փոքրիկ ձյունափայլ ամպ լեռան լանջով իջնում էր դեպի եղջերուի կիրճը։ Խալիտը նայեց պարզ երկնքին, նայեց ծառերի անշարժ, ձյունածածկ ճյուղերին ու տուն մտավ։

— Բաց է,— պատասխանեց նա ու նստեց։

— Բաց է,— շշնջաց բժիշկը, կարծես Խալիտին բարկացնելու դիտավորությամբ և շարունակեց.— Խալի՛տ, ասում ես բա՞ց է։

Խալիտը լուռ էր։ Նրա նիհար ու ջղուտ ձեռքերը ցնցվեցին, չոր դեմքի վրա փայլեցին սև ու խորն ընկած աչքերը։

— Մենակ չե՛ս գնա։

— Մենակ եմ գնում։

— Չե՛ս գնա,— կրկնեց Խալիտը։

— Ի՞նչ կա որ, Խալի՛տ, սիրելիս,— հարցրեց բժիշկը. նրա կլոր այտերը փքվեցին ծիծաղից։

Հաղթանդամ ու լայնաթիկունք էր բժիշկը. «երջանիկ անհոգություն», այսպես էր անվանում նրան Խալիտ Ուրմեիչը, մշտապես մռայլ ու լռակյաց այդ «շատկերիկը», ինչպես որ կոչում էր բժիշկը։

— Չե՛ս գնա,— նորից կրկնեց Խալիտն ու դուրս գնաց՝ իր հետևից աղմուկով փակելով տան դուռը։

— Խռովահույզ է...— շշնջաց բժիշկը և շարունակեց հագնվել։ Բարձրաճիտք ունտերը[2]) ոտքերը քաշեց, շերտավոր սկյուռի մորթուց կարած ձեռնոցները հագավ, վերցրեց եղջերուի մորթուց կարած երկտակ քնապարկն ու դուրս եկավ։

Դրսում սպասում էր շների նարտը։ Օդը խաղաղ էր. երեկոյան մշուշի թանձր ստվերները լեռան ստորոտից ձգվում էին դեպի գագաթը։ Բժիշկը մի պահ վարանեց։ Նարտից քիչ հեռու կանգնած էր մռայլ ու բարկացկոտ Խալիտը։ Նա նայում էր Մորժոտի մթնող կատարին, նայում էր նրա վրա լողացող ճերմակ ամպին ու ինքն էլ մթնում։

— Մնաս բարով, Խալի՛տ...— զիլ ձայնով գոչեց բժիշկն ու մտրակեց շներին։

Նարտը շարժվեց, ու երբ անցավ բլրակի ետևը, Խալիտը շտապով տուն մտավ ու դուռը փակեց։

Գերանաշեն փոքրիկ խրճիթում ցուրտ էր ու անհյուրընկալ։ Ճրագի կարմրավուն լույսը աղոտ կերպով լուսավորում էր խրճիթը։ Երբ Խալիտը դուռը փակեց, կրակարանը դեռ առկայծում էր։ Նա կրակարանը փայտ չդրեց։ Նրա ուշադրությունը գրավեց ընկերոջ ուրախ դեմքը, որ նայում էր լուսանկարի շրջանակի միջից ու ժպտում էր այնքա՜ն ջերմ ու սրտագին մտերմությամբ։ Խալիտն ուզեց դուրս գալ, բայց հանկարծ նրան թվաց, թե լսեց բժշկի ձայնը. «Խռովահույզ է...» և նրա սիրտը ցավից կծկվեց։

— Դատարկ մարդ ես, դատարկ,— շշնջաց Խալիտը բարկացկոտ աչքերը հառելով ընկերոջ նկարին.— քո ի՞նչ գործն է՝ ճանապարհ ես ընկնում։ Հիվանդ ունեն, թող քեզ մոտ բերեն... «Երջանիկ անհոգություն» — շշնջաց նա, մոտեցավ կրակարանին, փայտ դրեց։

Հետո նա մարեց ճրագն ու փորձեց քնել, բայց քունը մոտ չէր գալիս նրա աչքերին։ Հազար ու մի տարօրինակ մտքեր խառնվում էին նրա ուղեղում։ Հետո ավելորդ մտքերը հեռացան և գերիշխեց միայն մի միտք՝ «նրան մենակ թողնել չէր կարելի, ինչո՞ւ, ինչո՞ւ ես նրա հետ չգնացի»։

Ուշ գիշեր էր։ Խալիտը քնել էր արդեն։ Հանկարծ շունը վեր թռավ ու աղիողորմ ճիչ արձակեց։ Դա բավական էր, որ Խալիտը շանթահարվածի նման վեր թռչեր տեղից։ Շան սարսափելի աչքերն ու երկչոտ վնգվնգոցը նրան ամեն ինչ ասացին։ Խալիտը շտապ հագնվեց, դուրս եկավ տնից, մի քանի քայլ առաջ վազեց և տեղն ու տեղը քարացավ։ Քաղցած գայլերի ոհմակը հենց նոր էր սլացել բժշկի ետևից։ Նրանք իրենց բաղ-

1) Մորժոտ—ամենաբարձր լեռնագագաթներից մեկը մեր երկրի հյուսիսում։

2) Ունտ—եղջերուի կամ սկյուռի մորթուց կարած գուլպա, որը հագնում են կոշիկների փոխարեն։

մաթիվ հետքերը թողել էին ձյան վրա։ Խալիտի սիրտը տրոփեց. լայն բացած աչքերը զայրույթից վառվեցին։ Նա վայրկենապես տուն մտավ, վերցրեց հրացանը։ Երբ ուզում



Ոհմակը մոտենում էր նարտին։

էր դուրս գալ, շունն ուրախ ճիչ արձակեց ու վազեց առաջ։



Սաստկանում էր բևեռային սառնամանիքը։ Բժիշկն իր նարտն ուղղեց դեպի սառած գետը և մտրակեց շներին։ Ուղեցույց շունը մի պահ վարանեց։ Նա միշտ ինքն էր ընտրում նարտի ճանապարհը։ Երբ մտրակը նորից շառաչեց լծաշարքի վրա, շունը նարտը տարավ գետի հունով։ Կատարվեց այն, ինչից ամենից շատ վախենում էր Խալիտ Ուրմեիչը։

— Կիրճերը չմտնես,— զգուշացրել էր բժշկին Խալիտը.— գետերի վրայով չգնաս. ջրափոսերը կընկնես։ Ամենակարևորը՝ շներին չստիպես, չքարկացնես, նրանց բնազդին չհակառակես։

Բժիշկը կամ մոռացել էր, կամ նշանակություն չէր տվել Խալիտի խոսքերին։ Նա անվերջ մտրակում էր շներին ու շտապեցնում. շներն էլ քանի գնում, այնքան արագացնում էին իրենց վազքը։

Ցուրտը սաստկանում էր, սառույցը տրնքում ու խոր ակոսներով պատառոտվում։ Բժշկի երեսկալը սկսեց սառցապատել։ Սառցի բյուրեղները կախվեցին նրա հոնքերից ու աչքերի թարթիչներից։ Շների երախները ձյունապատվել էին։

Բժիշկը փորձեց երեսկալը հետ քաշել, բայց դանակի պես կտրող ցուրտն անմիջապես սառեցրեց նրա այտերը և նա նորից ծածկեց երեսը։ Շները մեծ զգուշությամբ շրջանցում էին ջրափոսերն ու խուսափում կախված ժայռերից։ Բևեռային սև գիշերը թանձրանում էր տայգայի վրա։ Բժիշկը լըսում էր իր հիվանդ սրտի տագնապալի զարկերը։ Բայց ճանապարհը դեռ երկար էր ու ցուրտը սաստիկ։ Նա փորձեց դանդաղեցնել շների վազքը, բայց ապարդյուն։ Նարտը սլանում էր այնպիսի արագությամբ, որ բժիշկը հազիվ էր կարողանում իրեն պահել սահնակի վրա։ Ինչքան ուժ ուներ ձգում էր ուղեցույց շան արգելակային գոտիները, գոռում էր։ Շներն այլևս չէին լսում նրան։ Նրանք նույնիսկ դադարել էին շրջանցել ջրափոսերն ու սառցակույտերը։ Բժիշկը նորից քաշեց գոտիները։ Ոտից մինչև գլուխ թրջված նրա մարմինը սառցակալել ու ծանրացել էր։ Երբ զգաց, որ դրությունը լրջանում է, այնպիսի ուժով քաշեց ուղեցույց շան արգելակային գոտիները, որ շունը պտտվեց տեղում, օդ բարձրացավ ու տապալվեց գետին։ Մյուս շները չկարողանալով կասեցնել իրենց վազքը, թափվեցին նրա վրա։ Նարտն ինչ-որ ծանր հարված ստացավ ու ջարդվեց։ «Վե՛րջ», առկայծեց բժշկի գլխում և նա այլևս ոչինչ չիմացավ։ Մթության մեջ միայն լսվում էին վիրավոր շների տնքտնքոցները, իսկ տայգան լուռ էր ու խավար։ Այդ խավարում բազմաթիվ ճրագների նման վառ-

վում էին գայլերի աչքերը։ Ոհմակը մոտենում էր նարտին։

***

Արդեն կես գիշեր էր, երբ դուռը ծեծեցին։ Շներն աղմուկ բարձրացրին։ Տատոն վեր թռավ տեղից ու ներս թողեց եղջերուի քուրքի մեջ փաթաթված մարդուն։ Երբ մարդը հանեց երեսկալը, Տատոն զգաստացավ ու սաստիկ մռայլվեց։ Նա ճանաչեց Խալիտին. լավ գիտեր, որ այս մարդը փոքր բանի համար չէր անհանգստացնի իրեն։ Երբ Տատոն լսեց բժշկի մեկնելու և գայլերի հետքերի մասին, դառնությամբ լի աչքերը մի պահ հառեց մեզ վրա. Նրա խիստ հայացքը մթագնեց։



Երեխան փրկված էր։

Այս անգամ Տատոն արագաշարժ էր։ Նարտըն արդեն պատրաստ էր։ Տատոն բարձրացավ առաջին սահնակի վրա...

Մենք սլանում էինք ձյունապատ տայգայով, իջնում սարալանջերով, մտնում կիրճերը, նորից բարձրանում և այդպես առաջ էինք սլանում դեպի երկու գետերի խառնարանը։

Տատոն զգաց գայլերի մոտիկությունը։ Նա նարտն ուղղեց դեպի ոհմակը։ Խելացի կենդանիները հասկացան իրենց տիրոջ միտքը և խուլ հաչոցներով առաջ ընթացան։ Տատոն այնպես էր կապել շների օղակները, որ երկար պարանի մի շարժումով բոլորը բացվեցին և շները վայրկենապես ազատվեցին նարտից։ Սոսկալի իրարանցման մեջ մի պահ ոչինչ չհասկացանք։ Լսվում էին միայն խեղդվող գազանների խրխռոցներն ու շների աղիողորմ ճիչերը։ Գայլերից մի քանիսն ահա բաժանվում են ոհմակից ու արշավում մեզ վրա։ Զարմանալի հանդստությամբ ու բառերը շեշտելով Տատոն հրամայեց.

— Հրթիռները պատրաստե՛լ։

Գայլերից մեկն արդեն ցատկել էր Տատոյի ուսին, երբ նա նույն հանգիստ ձայնով շշնջաց.

— Կրա՛կ...

Երբ հրթիռները շանթի նման ծվատեցին գիշերային խավարը, ես նկատեցի, թե ինչպես ուղղակի կողքիս, ձյան վրա թավալվում էին գայլն ու Խալիտ Ուրմեիչը։ Մի քիչ հեռու Տատոն մարտնչում էր երկու գայլի հետ։ Ես իրար հետևից բաց թողեցի երկու հրթիռ ու նետվեցի Տատոյին օգնության։ Շները փրփուրը բերաններին հոշոտում էին գայլերին։ Բժշկի ջարդված նարտի մոտ մի քանի գայլ ինչ-որ բան էին լափում։ Տատոն նկատեց բժշկի նարտը, նկատեց նաև լափող գայլերին ու վագրի պես նետվեց նրանց վրա։

***

Առավոտ էր, բևեռային գորշ առավոտ։ Մեր հոգնած ու վիրավոր մարմիններն այլևս անզոր էին դիմադրել սոսկալի ցրտին։ Բժշկին սպասող հիվանդի հարազատները օգնության հասան, քնապարկերի մեջ դրին մեզ։ Մի քանի րոպե հետո մենք գտնվում էինք արդեն լավ տաքացված յուրտում։ Տատոն առաջինը մոտեցավ երիտասարդ բժշկի կարծես անշնչացած մարմնին և երբ հետ գցեց երեսի ծածկոցը՝ տեղում քարացավ։ Դա Տատոյի ավագ որդին էր, որ այս տարի վերջացրել էր Խաբարովսկի բժշկական ինստիտուտը և վերադարձել իր ծննդավայրը։ Դա նրա առաջին այցելությունն էր հիվանդին։

Իսկ ինչո՞ւ նա այսպես գունատ է և լուռ։ Տատոյի հայրական սիրտը կծկվեց ցավից, բայց միայն մի վայրկյան։ Բժիշկը բացեց աչքերը, փորձեց տեղից բարձրանալ՝ չկարո-

ղացավ: Տատոն հետ քաշվեց ու վառեց ծխամորճը: Ծխի սև քուլաները, ինչպես մըռայլ ամպեր, բարձրացան նրա ժայռի պես քարացած դեմքի վրայով: Յուրտի անկյունում պառկած էր մի երեխա: Երեխան գալարվում էր ինչ-որ ցավերից. սառը քրտինքը պատել էր նրա մանկական դեմքը: Նա իր անզոր թաթիկներով օգնություն էր աղերսում: Եվ ահա Տատոյի որդին՝ բժիշկը, տեղից վեր կացավ: Նրա աջ ազդրի վրա արնաշաղախ մի վերք էր բացված: Նա ընկավ. ոտքերը թույլ էին: Երեխան սկսեց խրխռալ: Բժիշկը լսեց մեռնող մանկան ճիչը, թունդ առավ, սողաց դեպի մանուկը և սառած ձեռքերով սկալպելի ծայրով պատռեց անգինայի հետևանքով մանկան կոկորդում կոշտացած ուռուցքը: Մանուկը ճչաց ու նետվեց դեպի հայրը: Երեխան փրկված էր:

Մի քանի օր հետո մենք բոլորս հավաքվել էինք Տատոյի մոտ:

— Խալի՛տ, նայիր Մորժոտին՝ բա՞ց է, թե՞ չէ,— ուրախ ու անհոգ ժպիտն երեսին ասաց բժիշկը:

— Բաց է,— պատասխանեց Խալիտն ու ավելացրեց,— մենակ չե՛ս գնա:

— Մենակ եմ գնում:

— Չես գնա,— կրկնեց Խալիտը, տեղից վեր թռավ ու նստեց նարտի վրա:




*ՄՆ. ԹԱՐՅԱՆ*

Չի՛կը-չի՛կը,
Չի՛կը-չի՛կը...
Տես Աչիկը,
Ու Վաչիկը
Իրար պոչից
Ամուր բռնած
Եվ իրար կից՝
Գնացք դարձած,
Վազվզում են
Սենյակի մեջ.
Նրանց խաղին
Էլ չկա վերջ:
—Տո՜ւ-տո՜ւ-տիտի՛կ...
Ասա, տատի՛կ,

Դու ո՞ւր կուզես,
Որ տանենք քեզ:
—Տարեք, տարեք,
Խելո՛ք բալեք,
Ինձ այս անգամ
Կիրովական:
—Դե՛, իհա՛րկե...
Գնանք, տատի՛կ,
Մեր գնացքը
Լավն է, ընտի՛ր.
Իսկ մենք, իսկ մենք
Շատ լավ գիտենք
Գնացք վարել:
Քանի՜ անգամ

Մարդ ենք տարել...
Չի՛կը-չի՛կը,
Չի՛կը-չի՛կը...
Տես Աչիկը,
Ու Վաչիկը,
Մեկ էլ նրանց
Լավ տատիկը
Ամուր բռնած
Իրար պոչից,
—Տու-տո՜ւ,— մտան
Սենյակը կից:
—Թը՜շ-բը՜շ, տուկ-տա՛կ...
Տե՛ս, ի՜նչ արագ
Նրանք հասան
Կիրովական:

# ՕԳՆԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԸ

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Սկսվել են պիոներական ակտիվի ընտրությունները: Օղակներում և ջոկատներում պիոներները արդեն մտածում են, թե ինչ հետաքրքիր գործեր կարելի է կատարել ընտրություններից հետո, ինչպիսի հավաքույթներ, էքսկուրսիաներ, սպորտային մրցումներ, ինչպես լավ խաղեր կարելի է կազմակերպել, գրքեր կարդալ ու քննարկել, սարքեր ու մոդելներ պատրաստել: Եվ այս բոլորն անպայման կլինեն պիոներական աշխատանքի ծրագրի մեջ: Այդպիսի ծրագրեր կազմեցին նրանք նաև անցյալ տարի: Եվ ինչքա՞ն հետաքրքիր գործեր կատարեցին...

Մեր ամսագրի այս համարում տպագրում ենք երկու ակնարկ պիոներական դրուժինաների աշխատանքի մասին:

*Ոսկեգույն ծովի նման մեղմ օրորվում էին ցորենի արտերը: Դաշտի հնձված մասերում տեղ-տեղ դիզված էր ծղնոտը:*

*«Ստալինեց—6» կոմբայնը շարունակում էր առաջ շարժվել ու հունդալով հնձել բերքառատ արտը: Կոմբայնի հետ կողք-կողքի շարժվում էր ավտոմեքենան: Կոմբայնը ցորենը լցնում էր այդ մեքենայի մեջ:*



Տրակտորը կոլտնտեսության դաշտում

*Բազմաթիվ կոլտնտեսականներ հավաքում և դիզում էին ծղոտը: Ոմանք էլ ցորենն էին պարկերը լցնում ու պահեստ ուղարկում: Դաշտի հնձված մասում հասկ էին հավաքում քանից ավելի երեխաներ: Դրանք Ախուրյանի շրջանի Մարմաշեն գյուղի պիոներներն էին: Նրանք ամեն տարի դաշտ են դուրս գալիս կոլտնտեսությանն օգնելու:*

*Շատ համերաշխ էին աշխատում նրանք. այնքան լավ էին հավաքում հասկը, որ ճընճղուկները դժվարությամբ էին կեր ճարում:*

*— Ընկե՛ր Վազգեն, ինձ շատ է հետաքրքրում կոմբայնի աշխատանքը,— արտը խուզող կոմբայնին նայելով, ասաց հինգերորդ դասարանցի Համիկը:*

*— Համի՛կ, կոմբայնը կանգնեց. երևի ընդմիջում է. հավաքիր բոլոր պիոներներին՝ մոտենանք նրան,— պատասխանի փոխարեն ասաց ջոկատավարը:*

*Քիչ հետո պիոներները շրջապատել էին կոմբայնը և հետաքրքրությամբ դիտում էին: Նրանցից ամենափոքրը՝ չորրորդ դասարանի աշակերտ Արմենը բարձրացել էր կոմբայնի վրա և ինչ-որ անիվ էր պտտում:*

*— Արմե՛ն, այդ ի՞նչ ես անում, կփչացնես. ցած իջիր և այստեղից նայիր,— նկատեց ջոկատավարը:*

*— Ես ուզում եմ տեսնել, թե ինչպես է հասկը ցողունից կտրվում:*

*— Ես ձեզ ամեն ինչ ցույց կտամ, ասաց կոմբայնավարը և պիոներներին իր շուրջը հավաքելով պատմեց կոմբայնի կառուցվածքի և աշխատանքի մասին...*

*— Շատ աշխատանք ու ժամանակ է պետք, որպեսզի արտը գերանդիով հնձվի, հնձվածը կալ տեղափոխվի, սովորական կա-*

մով ծեծվի, ապա քամհարվի։ Ձեռքի աշխատանքը դանդաղեցնում է գործը, բերքի մեծ կորուստներ տալիս, ուրեմն՝ բերքատվությունը ցածր է լինում։ Այժմ, մեր երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում այդ աշխատանքներն ավելի լավ և արագ կատարում են մեքենաները, այսպիսի կոմբայնները։ Դուք տեսա՞ք, թե ինչպես կոմբայնը հնձեց, կալսեց, ծղոտը հավաքեց, կույտերով ցած գցեց, իսկ քամհարած ցորենը հատուկ հարմարանքով լցրեց ավտոմեքենայի մեջ։ Հիմա մենք կաշխատեցնենք և դուք ամեն ինչ մոտիկից կտեսնեք։

— Քեռի՛, թույլ կտա՞ք ես էլ բարձրանամ կոմբայնի վրա։ Ես ձեզ չեմ խանգարի,— խնդրեց Արմենը։

Կոմբայնավարի ժպիտը բավական էր, որ Արմենը վազեր դեպի կոմբայնը։

— Ես էլ շոֆերի մոտ կընստեմ,—բացագանչեց Համիկը և պատասխանի չսպասելով, բարձրացավ ու նստեց մեքենավարի կողքին։

Բոլորն ուրախ ծիծաղեցին։ Մեքենաներն աղմկեցին ու շարժվեցին առաջ։

Կոմբայնը հնձում էր արագ և մաքուր։ Երեխաները գնում էին նրա հետևից ու հիացմունքով դիտում հիանալի մեքենան։

Կոմբայնը կանգ առավ։ Բոլորը նորից հավաքվեցին նրա շուրջը։ Ուրախությունիցասես թեթևացած, Արմենն իջավ ցած։ Կոմբայնավարին նա այնքան հարցեր էր տվել, որ նույնիսկ ստացած պատասխանները խառնում էր իրար։ Նա հիշեց, որ մի շատ կարևոր հարց մոռացել է։

— Քեռի՛, իսկ այս կոմբայնը քանի՞ մարդու գործ կարող է կատարել։

— Օրական 200 մարդու։ Սա մի օրում 35 հեկտար ցորեն կարող է հնձել։ Մեր մեքենա-տրակտորային կայանում ուրիշ շատ տեսակի մեքենաներ էլ ունենք, որոնք օգնում են մարդուն։ Տուն գնալիս մտեք ձեր կոլտնտեսության ճակնդեղի դաշտը։ Այնտեղ դուք ճակնդեղի ցանքը մշակող հիանալի մեքենա կտեսնեք։ Մի օր էլ եկեք մեր ՄՏ կայանը։

— Ես ձեզ ճանաչում եմ. անցյալ տարի էլի դուք էիք, որ հնձում էիք մեր կոլտնտեսության ցորենը։ Դուք Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ալեքսան Պողոսյանն եք,— ասաց Արամը։



«Ստալինեց—6» կոմբայնը հնձում է...

— Ես էլ ձեզ եմ ճանաչում,— ժպտալով պատասխանեց կոմբայնավարը։

— Ճիշտ է, ձեր անունները չգիտեմ, բայց գիտեմ, որ դուք շատ աշխատասեր պիոներներ եք։ Անցյալ տարի դուք մեզ շատ օգնեցիք. հիշո՞ւմ եք՝ 13 հազար կիլոգրամ հասկ հավաքեցիք։ Դե՛, գործի անցնենք. շարունակեցեք հասկահավաքը։ Տեսնենք այս տարի ինչպես կաշխատեք,— ասաց անվանի կոմբայնավարը և մեքենան շարժեց առաջ...

Հանդիպումը կոմբայնավարի հետ, կոմբայնի աշխատանքը մոտիկից դիտելը երեխաների մեջ մեծ հետաքրքրություն առաջացրին դեպի գյուղատնտեսական մեքենաները և նրանք որոշեցին էքսկուրսիա կազմակերպել դեպի մեքենա-տրակտորային կայան։

Այդ օրը պիոներները 125 կիլոգրամ հասկ հավաքեցին և հաջողությունից ոգևորված գնացին շաքարի ճակնդեղի դաշտը։ Այստեղ

նրանք ծանոթացան միջշարքային փխրեցնող կուլտիվատորի աշխատանքին։

Ճակնդեղի բարձր բերք ստանալու առաջին պայմանը ճակնդեղի աճելու բարենպաստ պայմաններն են, փխրուն հող ստեղծելը։ Ճակնդեղն այդպիսի հողում «ազատություն» է ստանում, արմատները գցում է խոր հողի մեջ ու սկսում փարթամորեն աճել։ Մարդիկ հողի փխրեցման աշխատանքը ձեռքով շատ դանդաղ են կատարում և չորս սանտիմետր խորությամբ միայն. այն էլ ամբողջ մշակման ժամանակ մեկ-երկու անգամ։ Կուլտիվատորը շատ բարձր որակով է կատարում այդ աշխատանքները։ Փխրեցնում է յոթ անգամ և ոչ թե չորս, այլ ութ սանտիմետր խորությամբ. արմատահան է անում բոլոր մոլախոտերը։ Պարզ է, որ այդպիսի մշակումից հետո առատ բերք կստացվի։

Այդպիսի օգնական-մեքենաներ պիոներները տեսան նաև մեքենա-տրակտորային կայանում։ Այնտեղ կանգնած բազմաթիվ ու բազմատեսակ տրակտորները, սերմացանները, շարքացանները, նորագույն կոմբայնները և կուլտիվատորները տեսնելով, զգացին, թե իրենց կոլտնտեսություններն ինչպիսի՜ հզոր տեխնիկա, մեծ ուժ ունեն գյուղատնտեսական աշխատանքները հաջող կատարելու համար։

Էքսկուրսավարը պիոներներին տարավ մի նոր, հետաքրքրական մեքենայի մոտ։

— Ձեզանից ո՞վ է տեսել, թե ինչպես են ճակնդեղը հավաքում,— հարցրեց նա։

— Ես, ասաց Արամը,— ես էլ եմ մասնակցել ճակնդեղ հավաքելուն։ Տրակտորը գութանների միջոցով հողը շուռ էր տալիս և ճակնդեղը հանում հողի երես։ Մենք էլ ճակնդեղը գետնից վերցնում, հողը թափ էինք տալիս, ավելորդ, կանաչ տերևները կտրում ու կույտերի վերածում։

— Ճիշտ է, բայց գիտե՞ք, որ այդպիսի գործը շատ ժամանակ ու մեծ աշխատանք է պահանջում. մինչև բերքը պետք է արագ ու անկորուստ հավաքել, թե չէ մոտեցող ձմեռը կխանգարի բերքահավաքին։ Ահա սովետական գործարանների մեզ ուղարկած նոր նվերը, նայեցեք։ Սա ճակնդեղ հավաքող կոմբայնն է։ Կոմբայնը կաշխատի բոլորի փոխարեն։ Կհանի, ավելորդ տերևները կկտրի, կմաքրի հողից և կույտերով կթափի ցած։ Այստեղ էլ մարդու աշխատանքը մի քանի անգամ թեթևանում է։

«Իսկ քանի-քանի՜ այդպիսի մեքենաներ են ստեղծված բամբակի, այգիների, խաղողի և մյուս կուլտուրաների մշակման համար» մեքենա-տրակտորային կայանից դուրս գալիս մտածում էր ամեն մի պիոներ։

# ՀԱՄԱՐՁԱԿ ՊԱՏԱՆԻՆԵՐԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

ՄՐՑՈՒՄ

Բնագիտական կաբինետում ոչ մի օր այսպիսի լռություն չի եղել։ Այնքան խաղաղ ու լուռ է, որ մոտակա անտառից լսվում է կկվի ձայնը, խճուղիով բարձրացող ավտոմեքենայի ծանր հռնդյունը։

Քննություն է։ Վեցերորդ դասարանի աշակերտուհի Ժենյա Մանուկյանը պատմում է պարազիտ սնկերի, երկշաքիլ բույսերի սերմերի կազմության մասին։ Դասատուն և ասիստենտը զմայլված լսում են նրան։ Ժենյան պատմում է առանց մի բառ անգամ փնտրելու, համարձակ ու վստահ։ Ասիստենտի հարցին պատասխանելու համար նա լուսամուտի գոգից վերցնում է բանկաներից մեկը, որի մեջ ինքը լոբի է աճեցրել և բռնելով արևի շողքի դեմ, պատմում է երկշաքիլավոր բույսերի մազարմատների մասին։

Լավ քննություն են տալիս նաև օղակի մյուս անդամները։ Եվ Ժենյան ուրախ է իր ընկերների հաջողության համար, բնասերների օղակի հաստատուն գիտելիքների համար։ Հիանալի սովորել են, եռանդով աշխատել են հողամասում, լավ էլ քննություն տվին։

Շատ բույսեր է աճեցրել Ժենյայի օղակը դպրոցամերձ հողամասում։ Բայց ոչ մեկն

այնքան մտահոգություն չի պատճառել, ինչպես բազմահասկ ցորենը և սև խուրման։

Դեռևս ձմեռ էր, որ Ժենյան ու Լաուրան ծաղկամաններում խուրմայի կորիզներ ցանեցին. իսկ գարնանը՝ հողի հետ միասին տեղափոխեցին հողամաս։ Բնագիտական խմբակի որոշ անդամներ ձեռ էին առնում նրանց։ Ընկերուհիների մեջ էլ վեճ ծագեց, բայց դասատուի խորհրդով նրանք շարունակեցին հետևել այդ նոր բույսի աճմանը։ Անսպասելի արդյունքն ուրախացրեց նրանց։

Ժենյա Մանուկյանը դեռ երրորդ դասա-



Պիոներները ջերմոցի համար փեղկեր են պատրաստում։

րանից ծառերի ու ծաղիկների սիրահար էր, իսկ հետո՝ բնագիտական խմբակի առաջին անդամներից մեկը. բայց երբեք այդքան չէր ուրախացել իր աշխատանքի պտուղների համար։ Բայց օղակի անդամները հիմա տեսնում էին մյուս օղակների լավ աշխատանքը և նրանց մեջ բուռն ցանկություն էր ծագում առաջ անցնել նրանցից։ Օղակն ուզում էր մրցել մյուսների հետ, որ միացյալ ուժերով դպրոցամերձ հողամասը ծաղկուն պարտեզ դարձնեն։ Նրանք նույնիսկ իններորդ դասարանցի Սվետլանա Շեկոյանի օղակի հետ ուժերը չափելուց չվախեցան։ Սվետլանան շատ տարիներ է, ինչ հայտնի է դպրոցում որպես ջերմեռանդ բնասեր։ Նրա սերմերի և ծառերի ճյուղերից կազմած հարուստ կոլեկցիաները, հերբարիումները, անցյալ տարի ստացած փոքրիկ, բայց քաղցրահամ ձմերուկները և վերջապես այս տարի թթու անտոնովկա և քաղցր շաքարկենի խնձորների հիբրիդացման փորձերը հայտնի էին։

Այս բոլորը չվախեցրեց վեցերորդ դասարանցիներին։ Ավագ ընկերների օրինակը նույնիսկ վարակեց նրանց։

— Մենք էլ փորձենք,— որոշեցին վեցերորդցիներն ու առաջարկեցին մրցել Սվետլանայի օղակի հետ։

— Մրցե՛նք,— ասաց Սվետլանան, ձայնի մեջ թերահավատության մի փոքր շեշտ։ Եվ մրցումն սկսվեց։

Երբ իններորդ դասարանի բնասերների մյուս օղակն այս տարի խաղող տնկեց և երբ փոքրիկ աստղաձև տերևները երևացին մարգի վրա, Ժենիկի օղակի անդամներն ըդգաստացան։

— Խաղո՞ղ, լավ,— ասացին նրանք օղակավար Վալիկո Զոհրաբյանին.— մենք մինչև իններորդ դասարան հասնենք, այնպիսի՜ բույսեր ունենանք, որ կարմանաք։

Եվ նրանք սկսեցին նոր բույսեր աճեցնել։

Օղակների մրցումը քանի գնաց բորբոքվեց։ Մաքրինե Եղիազարյանը աճեցրեց երկու տեսակ վարունգ, յոթերորդ դասարանցի Մարիետա Խարազյանի օղակը կերի ճմերուկ, կերի դդում։

Մրցումը նոր անդամներ բերեց բնասերների խմբակ։ Երկու հազար մետրանոց, ծառերով ու ծաղիկներով զուգված հողամասը հրապուրեց նրանց, թե՞ ընկերների եռանդուն աշխատանքը, հայտնի չէ։

Մաքսիմն սկզբում ասում էր.

— Բան դուրս չի գա։

— Արի մասնակցիր, տես ի՛նչ լավ կլինի,— համոզում էր նրան Ժենիկը։

Մաքսիմը չէր գալիս։ Բայց երբ գարնանը հողի կրծքից դուրս սողացին առաջին ծիլերը, նա եկավ Ժենիկենց տուն, թե՝

— Ես էլ եմ ուզում աշխատել հողամասում, նոր բույսեր աճեցնել։

Ընկերներից առաջ անցնելու ձգտումը և հարազատ դպրոցին ու կոլտնտեսությանը մի լավ գործով օգտակար լինելու ցանկությունը

եռանդի բերեցին շատերին՝ Ներկարարյան Կատինկային, Դարբինյան Ասյային և շատ ուրիշներին։

Քանի եղանակները տաքանում էին, այնքան բնասերների աշխատանքը նոր թափ էր ստանում։ Ե՛վ քննություններին էին պատրաստվում, և՛ ամառային գործերի ծրագիր էին կազմում, և՛ հողամասում պայքար էին մղում մոլախոտերի դեմ, և՛ մտածում էին ապագա չտեսնված բերքի մասին։

## ՀԱՐԱԶԱՏ ԵՐԿՐԻ ՀԱՄԱՐ

Քննությունների նախօրյակի առավոտյան, արևի առաջին շողերի հետ, հինգերորդ դասարանի աշակերտուհի Աիդա Նալբանդյանը նորից հողամաս եկավ։ Ճակնդեղի ոչ մի ծիլ չկար։ Աիդայի սիրտը մի տեսակ ճմլվեց։ Ախր պատճառն ի՞նչ է. յոթերորդ դասարանցի Յաշա Լաչինյանի օղակն էլ իրենց հետ է ցանել, բայց նրա ցանած շաքարի ճակնդեղն արդեն ծլել էր, իսկ իր հողում միայն պատատուկն ու փուշն են լավ աճել։

«Շատ մի պետքական բաներ են, էլի», ցավով մտածեց Աիդան, կռացավ, մի քանի տեղ փորփրեց հողը, զայրույթով պոկեց մոլախոտի թփիկներն ու շպրտեց մի կողմ։

Այդ րոպեին բակ մտան Մարոն, Գյուլնարան, Սպարտակը, Ջանիկը։ Նրանք հեռվից տեսան իրենց օղակավարուհուն ու վազեցին դեպի նա։

— Չկա՞ն,— հարցրեց Մարոն։

— Յաշայինը կա, իսկ մերը չկա,— գանգատվեց Սպարտակը։

Մի պահ տխուր նայեցին հողակտորին ու լուռ քայլեցին դեպի դարբասը։

Խնդիրն առանց բնագիտության դասատու Լենա Մարիկյանի օգնության չլուծվեց։ Պարզվեց, որ շաքարի ու կերի ճակնդեղի սերմերը յարովիզացիայի էին ենթարկված, իսկ սեղանի ճակնդեղինը՝ ոչ։

Մայիսի վերջերին Աիդայի ճակնդեղը վերջապես ծլեց։ Ի՜նչ ուրախություն էր, ի՜նչ աղմուկ։ Իսկ Յաշան ու իր ընկերները նայում էին նրանց ու ծիծաղում։

Յաշան համեստ, քչախոս տղա էր. բայց չգիտես ինչու Աիդայի օղակի բնասերները կարծում են, թե նա իրեն ուզում է ցույց տալ։ Օրինակ՝ ասում է, թե Ուկրաինայի բնասեր-



Կոլտնտեսության նախագահի մոտ

ներից ստացած լոբազգի լյուպինն առաջին անգամ ինքն է աճեցրել։ Ի՞նչ անենք, թե նրա ցանած լյուպինը շատ լավ է բռնել ու փարթամորեն աճել է։ Կամ ի՞նչ մեծ բան է, որ սեխ է ցանել։ Ջրում հո ձմերուկ աճո՞ւմ է. ուրեմն սեխն էլ կաճի։

Եվ Աիդայի ու Յաշայի օղակները իրար հետ մրցելով գործն առաջ տարան։

Պատանի բնասերների համար սովորական էր դարձել, որ երբ առավոտները դպրոց էին գալիս, հողամասի միջնակներում տեսնում էին բարձրահասակ, թիկնեղ, դանդաղ քայլերով շրջող մի մարդու։ Այդ մարդը կոլտնտեսության նախագահ գյուղատնտես Համբեթ Հակոբյանն էր։

Մի օր էլ նա մոտ կանչեց բնասերներից մի քանիսին և ցույց տալով ճակնդեղների շարքերը, ասաց.

— Այս ի՞նչ եք արել, ընկե՛ր գիտնականներ, բա այսպես կցանե՞ն։

Երեխաները տարակուսանքով նայեցին իրենց ցանքին, իսկ նախագահը խորհուրդ տվեց՝ շարքերի միջի տարածությունը հասցնել 15—20 սանտիմետրի։ Այս տարի պիո-

*ներները կատարեցին նրա խորհուրդը և ճակընդեղները բավականին խոշոր ստացվեցին։*

*Երբ Հակոբյանն Ուկրաինա գնաց, իրենց գյուղից Կիևի մարզի Չերնոբիլի շրջանի Զալեսյե գյուղի պատանիներին մի ջերմ նամակ տարավ ու բազմաթիվ սերմեր. իսկ այնտեղից բերեց լյուպինի, կերի դդմի ու ձմերուկի սերմեր։ Այսպես, սերտ կապ ստեղծվեց Կուրթանի և Զալեսյեի պատանի բնասերների միջև։*

*Կոլտնտեսությունը շատ դեպքերում է օգնում պիոներներին. դպրոցի բնասերներն էլ իրենց փորձերը հաղորդում են կոլտնտեսությանը։*

*— Զոմիզա կտանք, բազմահասկ ցորենի սերմ կտանք։ Խաղողն էլ որ լավ եղավ, անպայման կօգնենք կոլտնտեսությանը, որ մեր գյուղում էլ խաղող լինի,— ասում են պատանիները։*

*Գյուղացիները դպրոցամերձ հողամասը շատ անգամ փորձադաշտ են անվանում։*

*— Այո, փորձադաշտ է, փորձադաշտ,— համոզված ասում է գյուղատնտեսական կուլտուրայի տան վարիչը։*

## ԱՅՍՊԵՍ ԵՆ ԱՆՈՒՄ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

*Երկու տարի առաջ, եթե որևէ աշակերտ իր կոլտնտեսական ծնողին ասեր, թե խաղող ենք տնկելու, հայրը երևի ապշեր. բայց հիմա ոչ ոք չի զարմանա, երբ մի փոքրիկ տղա կամ աղջիկ ասի.*

*— Շուտով լիմոն էլ կունենանք։*

*— Կանեք, ախպե՛ր, ամեն ինչ ձեր ձեռքից կգա,— կպատասխանի տասնյակ տարիների փորձ ունեցող գյուղացին։*

*Եվ ճիշտ որ, կարմիր վզկապավոր այդ համարձակները կանեն։*

*Պատանի բնասերները ոչ միայն սովորում են բույսեր աճեցնել, այլ խնամել ու պաշտպանել նրանց, որպեսզի ոչ մի կարկուտ ու խորշակ չկարողանա իջեցնել հայրենի դաշտերի ծով բերքը...*

*Ամառ էր, արև։ Չորրորդ դասարանի երեխաներն ուրախ խաղում էին Սելհարքի մոտ։ Շուտով Պուշկինյան լեռնանցքի կողմից ամպեր երևացին։ Երեխաները նկատեցին այդ և անհանգստացան։ Խաղն ընդհատեցին ու լուռ նայեցին ամպերի կողմը։*

*— Կարկուտ է գալու,— հանկարծ բացագանչեց Ստեփանը։*

*— Վա՜յ, ի՞նչ անենք,— վախեցած ասաց Շողիկը։*

*— Վազենք հողամաս,— վրա բերեց Հերբիկը։*

*— Գնանք, գնանք, շո՛ւտ,— կանչեց Ստեփանը և առանց ընկերներին սպասելու վազեց դպրոցի կողմը։*

*Բոլոր երեխաները պոկվեցին տեղներից ու թռան նրա ետևից։ Եվ մինչև որ ամպերը կկախվեին Գյառգյառ գետի ձորի վրա, երեխաների աղմուկն արդեն լցրել էր գյուղի փողոցները։*

*Կես ճանապարհին նրանցից մի քանիսը*




Ծանրոց Ուկրաինայի պիոներներին

*կանգ առան ու սկսեցին խորհրդակցել։ Ապա ամեն մեկը վազեց մի կողմ։ Մի քանի րոպե հետո նրանք երևացին դպրոցի բակում։ Մեկը մի աղյալ էր խտտել, մյուսը կարպետ*

*էր գցել գլխին ու հնիհն հասնում էր ընկերներին, երրորդը խաղը էր քաշ տալիս։*

*Ամպերն արդեն ծածկել էին երկինքը, երբ երեխաները ծածկոցները փռում էին վարունգի, ձմերուկի ու գարնան ցորենի վրա։ Մի քանի հոգի էլ շնչակտուր աշխատում էին գարու դաշտի շուրջը։ Նրանք ցցեր էին խփել հողակտորի չորս անկյունը և հիմա աշխատում էին մի կարպետ հագցնել ցցերի ծայրերին։ Հագցրին։ Ստացվեց մի ապահով ծածկոց։ Երեխաներին օգնության էին հասել ուսուցիչները։*

*— Կեցցե՛ք դուք, շատ ապրեք,— անընդհատ կրկնում էր դպրոցի դիրեկտորը։*

*Ամպերը կուտակվեցին, բայց կարկուտ շատ քիչ եկավ. դաշտին վնաս չտվեց։*

*— Ջեզանից վախեցավ, հա՞,— հետո կատակում էր բնագիտության դասատուն։*

*— Ճիշտ որ,— ծիծաղում էին փոքրիկները։*



*Երբ արևը դանդաղ իջնում է հեռավոր Ղարախաչ լեռան ետևը և դպրոցի ցանկապատի ստվերը հասնում է մինչև հողամասի շուրջը լայն գոտի կապած երեքնուկը, պատանի բնասերները, երկար կոթերով բրիչներն ու բահերն ուսերին դրած՝ գնում են տուն։ Հանդից վերադարձող կոլտնտեսականները գուրգուրող հայացքով նայում են նրանց ետևից և իրար ասում.*

*— Աշխատավորներ են, է՜, իսկական պիոներներ։*

*— Լավ էլ գյուղատնտեսներ կդառնան։*

*Նրանք ճիշտ են գուշակում պատանիների մտքերը։ Ժենիկն ուզում է դառնալ ինժեներ ու աշխատել անպայման մեքենա-տրակտորային կայանում, Յաշան երազում է նոր խիզախ փորձերի մասին, իսկ Աիդան այնպիսի ճակնդեղ կաճեցնի, որ մարդ դժվարանա շալակել։ Սվետլանան էլ, դե, իրեն արդեն պատկերացնում է ինստիտուտի լաբորատորիայում մանրադիտակի մոտ նստած...*

*Այսպես համարձակ ու երազող են Կուրթանի պատանի բնասերները։ Նրանց երազանքներն արդեն թևեր են առնում. և հեռու չէ այն ժամանակը, երբ երջանիկ պատանիներին կթռցնեն գիտության հեռուները, դեպի կյանքի փոթորկուն ծովը։*

**Ն. Ա. Օստրովսկու ծննդյան 50 տարին**

# ՄԱՐՏԻԿ ԳՐՈՂԸ

*Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*

(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

*Բարձր բլրի վրա կանգնած էր պանական կալվածքը, իսկ լճակի մոտ՝ ջրաղացն էր։ Գետի գեղատեսիլ ափին շարված էին գյուղական տնակները։ Մի կողմը տարածվում էին մարգագետինները, իսկ մյուս կողմը լճակն էր։ Լճակի մոտ գտնվում էր Օստրովսկիների տունը։*

*Փոքրիկ Կոլյան միշտ էլ հիանում էր ուկրաինական գյուղի տեսարաններով։ Նա հաճախ էր դուրս գալիս զբոսանքի, շրջում դաշտերում։ Դաշտերից այն կողմ սևին էր տալիս անտառը։ Ինչքա՜ն սունկ և հատապտուղ է հավաքել նա այդ անտառում։ Կոլյան հատկապես սիրում էր երեխաների հետ գիշերը լինել դրսում, բոցկլտացող խարույկի կարմիր լույսի տակ լսել հետաքրքրական արկածային պատմություններ, սիրում էր երգել...*

*Այդպես էր մեծանում փոքրիկ Կոլյան՝ Նիկոլայ Օստրովսկին, գինեգործարանի բանվորի տղան։ Նա անվախ պատանի էր, պատվախնդիր։*

*Օստրովսկին ծնվել էր Վիլիայում. այնտեղ էլ անցկացրեց իր վաղ մանկությունը։ Ծանր էր Կոլյայի կյանքը։ Նա փոքր հասակից շատ է աշխատել իր ընտանիքին օգնելու համար. բատրակություն էր անում, ձիեր էր պահում։ Նա շատ քիչ սովորեց։ Շեպետովկայի երկդասյան դպրոցի երկրորդ դասարանում*

էր Նիկոլայ Օստրովսկին, երբ հեռացվեց։ Այնուհետև աշխատում էր կայարանի բուֆետում, կաթսայագործի աշակերտ էր, էլեկտրոմոնտյորի օգնական... Նա տասնչորս տարեկան էր, որ Շեպետովկայից գնաց մասնակցելու սպիտակների դեմ մղվող կռիվներին։ Օգնում էր կարմիրբանակայիններին, կատարում էր նրանց տված հանձնարարությունները։ Նիկոլայ Օստրովսկին Ուկրաինայի առաջին կոմերիտականներից մեկն է։ 1924 թվականից նա դարձավ պարտիայի անդամ։ Տասնվեց տարեկան հասակում նա մտավ Կարմիր Բանակի հռչակավոր հրամանատար Կոտովսկու բրիգադան։ Ահա թուխ, նիհար, հին շինել հագած, բուդյոնովկա դրած պատանին։ Նա զինվորների սիրելին էր, նրանց կոչ էր անում պայքարի, քաջագործության, և քաջության ու խիզախության առաջին օրինակն ինքն էր ցույց տալիս։

Հետախուզության ժամանակ Օստրովսկին ընկավ գնդացրային կրակի տակ և վիրավորվեց։ Այնուհետև նա Բուդյոննու հեծյալ բանակում էր։ 1920 թվականի աշնանը ծանր վիրավորվեց և դուրս եկավ շարքից։ Առողջանալուց հետո, նա նորից առաջին շարքերում էր, բայց այս անգամ աշխատանքային ճակատի։ Աստղավոր բուդյոնովկայի փոխարեն նա ծածկում էր հասարակ կեպի, հագնում կոսովորոտկա։ Նա եռանդուն կազմակերպիչ էր, կոմերիտական անխոնջ աշխատող։ Իր ընկերների հետ մասնակցում էր երկաթուղու կառուցմանը և կռվում էր թշնամական բանդաների դեմ։ Բայց ծանր հիվանդությունը նրան խանգարեց։ Չնայած դրան, այդ ժամանակ էլ նա շատ էր կարդում, սովորում, պարապում էր ընկերների հետ։ Հենակները թևի տակ հաճախ էր լինում գրադարանում, մնում այնտեղ ամբողջ օրը։ Օրվա ընթացքում կարդում էր հինգ-վեց գիրք։ Գրադարանի աշխատողները զարմանում էին, չէին հավատում, թե մարդ կարող է այդքան գիրք կարդալ։ Եվ նա ստիպված էր լինում մանրամասն պատմել գրքերի բովանդակությունը։ Այդպիսով, նա ռուս և համաշխարհային հայտնի գրողների շատ ու շատ գրքեր կարդաց։ Դրանից շատ առաջ նրա վրա մեծ տպավորություն էին թողել իտալական ազգային հերոս Գարիբալդու մասին եղած գիրքը և Վոյնիչի «Բոռը»։ Այդ գրքերից նա սովորել էր հաստատակամություն, քաջություն և անսահման անձնվիրություն։



Ն. Ա. Օստրովսկի

Հիվանդությունն օրըստօրե բարդանում էր։ Սկսվեց հոդերի ոսկրացում. ոտքերը վնասվեցին։ Դա Օստրովսկուն դամեց անկողնուն։ Նա անշարժ պառկած էր մեջքի վրա։ Լրիվ կուրացավ նախ՝ աջ, ապա ձախ աչքը։ Այդ բոլորին ավելացավ անհաջող վիրահատումը, տիֆը։ Սկսվեցին անտանելի ցավերը։ Ո՛չ վաննաները, ո՛չ էլ սանատորիական կանոնավոր բուժումը, չկարողացան ծանր հիվանդության առաջն առնել։ Թվում էր, թե երիտասարդ Օստրովսկին չի կարող դիմանալ։ Ի՞նչ անել, ինքնասպանությո՞ւն գործել։ Բայց չէ՞ որ դա թուլություն կլինի։ «Իսկ դու փորձե՞լ ես այդ կյանքը հաղթահարել։ Դու ամեն ինչ արե՞լ ես, որպեսզի դուրս գաս նրա երկաթե օղակից... Կարողացիր ապրել նաև այն ժամանակ, երբ կյանքը դառնում է անտանելի։ Այն դարձրու օգտակար»։ Այսպես էր մտածում Օստրովսկին ծանր պահերին։

Նա իսկապես հերոսություն ցուցաբերեց, չուզեց կյանքի մի վայրկյանն անգամ իզուր կորցնել, այլ ծառայեցնել հարազատ ժողովրդին, հարազատ Կոմունիստական պարտիա-

յին։ Ինչքա՜ն գեղեցիկ են հնչում Նիկոլայ Օստրովսկու հետևյալ խոսքերը՝ «Ես անձրևի մի փոքրիկ կաթիլ եմ, որի մեջ արտացոլվել է պարտիայի արևը»։

Եվ ահա պարտիայի հարազատ զավակը ուզում էր այդ վիճակում էլ լինել մարտիկ։ Նա մարդու համար ամենագեղեցիկ բանը համարում էր կյանքը մարդկության ազատագրման մեծ գործին նվիրելը։

Աշխատանքը ծանր հիվանդության ժամանակ նրա համար դառնում է կենսական պահանջ։— Ես աշխատանքում ավելի բարձր եմ հիվանդությունից։ Ես արհամարհում եմ և ծիծաղում եմ նրա վրա,— հաճախ ասում էր Օստրովսկին։

Եվ ահա մի օր էլ նա որոշեց վիպակ գրել Կոտովսկու մարտիկների կյանքից։ Եվ գրեց։ Բայց այնպես պատահեց, որ փոստում ձեռագիրը կորավ։ Որոնումները ոչ մի արդյունք չտվին։ Օստրովսկին չընկճվեց։ Նա գրեց «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպը։ Վեպն ուղարկեց տպագրության։ Ահա թե ինչ հեռագրեցին նրան հրատարակչությունից. «Վեպն ընդունվեց մեծ ջերմությամբ։ Սկսում են հրատարակել։ Շնորհավորում ենք հաղթանակի համար»։

1932 թվականի «Մոլոդայա գվարդիա» ամսագրի ապրիլյան համարում լույս տեսավ Նիկոլայ Օստրովսկու «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպը։

Ահա վեպի հերոս Պավել Կորչագինը դպրոցում։ Մենք զգում ենք, թե ինչպես է տերտերը բռնում Կորչագինի ականջից, դուրս հրում միջանցք և դուռը հետևից փակում։ Այսպես է վերջանում նրա ուսումը։ Նա մտնում է կյանք՝ բանվորական միջավայր, շատ բան է սովորում կոմունիստ նավաստի Ժուխրայից և մյուս ռևոլյուցիոներներից։ Ընթերցողը շնչասպառ հետևում է, թե ինչպես է նա փրկում Ժուխրային, հետևում է նրա մյուս քաջագործություններին։ Ահա Կորչագինը քաջաբար կռվում է ռևոլյուցիայի նվաճումները թշնամիներից պաշտպանելու համար։ Ահա նա խաղաղ աշխատանքի տարիներին։ Հայրենիքի համար մղված մարտերում Կորչագինը կորցնում է իր առողջությունը, բայց չի հուսահատվում։

— Առա՛ջ, մի՛շտ առաջ,— այսպես է տոկուն, մեծ կամքի տեր պատանու լոզունգը։ «Ինչպես էր կոփվում պողպատը» դարձավ երիտասարդության ամենասիրած գրքերից մեկը, իսկ Պավել Կորչագինը՝ երիտասարդության ամենասիրելի հերոսը։

Գրողը իր կյանքի փաստերն է վերցրել Կորչագինի կերպարը կերտելու համար։ Բայց նա չի մնացել ինքնակենսագրության սահմանում։ Նա շունչ ու արյուն է տվել իր հերոսին, կենդանացրել է նրան վարպետի գրչով։ Նա գրել է ոչ թե իր կենսագրությունը, այլ իսկական վեպ։ Նիկոլայ Օստրովսկին «Ինչպես էր կոփվում պողպատը» վեպով սովորեցնում է երբեք չընկճվել, ամենադժվարին պահերին ուժ գտնել հաղթահարելու արգելքները, պայքարել առանց հանձնվելու։ «Ես այդ անում եմ նրա համար, որպեսզի ապագա մարտում, եթե դա մեր վզին փաթաթեն, երիտասարդությունից ոչ մեկի ձեռքը չդողա», գրում էր Օստրովսկին իր վեպի մասին։

Սովետական կառավարությունը բարձր գնահատեց գրողի կատարած աշխատանքը և նրան արժանացրեց մեծ պարգևի՝ Լենինի շքանշանի։ Նիկոլայ Ալեքսեևիչը շատ էր ոգևորված։ Նա 1936 թվականին գրեց իր երկրորդ վեպի՝ «Փոթորկածինների» առաջին հատորը։ Պատրաստ ձեռագիրը նա ուղարկեց իր ընկերներին։ Օստրովսկին չէր ուզում «Ինչպես էր կոփվում պողպատը» հռչակված վեպից հետո վատ գործ հրատարակել։ Ընկերները մի շարք դիտողություններ արեցին. բայց նրանց ընդհանուր կարծիքն այն էր, որ գրողն այս անգամ էլ է հաղթել։ Նա վերամշակեց վեպը։ Եվ ահա հեղինակի մահվանից մի քանի շաբաթ առաջ «Փոթորկածինները» պատրաստ էր տպագրության։

Օստրովսկին երկրորդ վեպի նյութը դարձյալ վերցրել էր քաղաքացիական պատերազմի շրջանից։ Այդ վեպով էլ նա երիտասարդ սերնդին ուզում էր կոփել ապագա պայքարում ֆաշիզմի դեմ մարտնչելու համար...

Սովետական երկրի թշնամիների դեմ կռվում են տարբեր ազգերի ռևոլյուցիոն բանվորները և նրանց զավակները։ Ահա Անդրի Պտախան և նրա ընկերները շրջապատված են թշնամիներով։ Մահը շրջում է շատ մոտ,

տան շուրջը, փորձելով ճեղքվածք գտնել, որ ներս մտնի։ Թշնամին նրանցից պահանջում է հանձնվել, բայց նրանք պատասխանում են.

— Կորիր սատանայի մոտ, ի՛ժ։ Պետք է կռվենք մինչև վերջինը։ Կեցցե՜ կոմունան...

Այսպես անբեր են Օստրովսկու հերոսները։ Ժողովուրդը սիրում էր նրանց շունչ տվող հեղինակին։ Մեծ գրող Մ. Գորկին հետաքրքրվում էր Օստրովսկու կյանքով ու աշխատանքով։ Օստրովսկուն Սոչիում հաճախ էին այցելում հյուրերը։ Նրանց մեջ էին գրող Սերաֆիմովիչը, հռչակավոր օդաչուներ՝ Չկալովը և Բելյակովը, այն ժամանակ դեռևս քսաներկու տարեկան երգիչ Պավել Լիսիցյանը, ինստիտուտների ուսանողներ, կոմերիտականներ, պիոներներ։ Երբեմն էլ նա ռադիոյով իր բնակարանից, Սոչիից, ելույթներ էր ունենում երիտասարդության համար։

Օստրովսկու վեպերը ոգևորել են ինչպես մեր երկրի, այնպես էլ ամբողջ աշխարհի երիտասարդությանը։ Վալերի Չկալովը, Օլեգ Կոշևոյը, Զոյա Կոսմոդեմյանսկայան, Ալեքսեյ Մարեսևը և շատ ու շատ հռչակավոր հերոսներ շատ բան են սովորել Պավել Կորչագինից, իրենց սխրագործությունները կատարելիս՝ ոգևորվել են նրա օրինակով։

Բալկաններում, պարտիզանական մի ջոկատում կար մի փոքրիկ տղա։ Նրա անունը Պավկա էր։ Ընկերներն այդպես էին կոչում՝ Պավել Կորչագինի անվամբ։ Բայց այնպես պատահեց, որ փոքրիկ տղան մի անգամ ինչ-որ մեղք գործեց։ Պարտիզանները նրան պատժելու համար զրկեցին Պավկա անունը կրելուց։ Տղան շատ վշտացավ։ Ի՞նչ աներ։ Նա վտանգի ենթարկելով իր կյանքը՝ կռվեց թշնամու դեմ ու երբ վերադարձավ հրամանատարի մոտ, վերջինս նրան հարցրեց.

— Ի՞նչ հատուցում կուզեիր քո կատարածի փոխարեն։

Տղան պատասխանեց.

— Ես միայն կուզեի, որ ինձ նորից Պավկա կոչեք։

Նրա ցանկությունը կատարվեց։

Ահա թե ժողովուրդները ինչքան են սիրում Օստրովսկու հերոսին։

Այս տարի լրանում է սովետական հռչակավոր գրողի ծննդյան հիսուն տարին։ Օստրովսկին ապրեց մինչև 1936 թվականի դեկտեմբերի քսաներկուսը՝ ընդամենը 32 տարի։ Բայց նա այնքան լավ ապրեց այդ կարճատև կյանքը, որ սերունդները միշտ էլ կոգևորվեն նրա կյանքով և նրա ստեղծած հերոսների գեղեցիկ գործերով։

# ՍԵՆԻԿՆ ԻՄԱՑԱՎ

Դ. ԳԱԶԱԶՅԱՆ

Նկ. Է. ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



...ծուխ է արձակում...

— Վա՛յ, հայրի՛կ, տես, օդանավն ի՞նչ ցածր է թռչում... ծուխ է արձակում,— զարմացած բացականչեց Սենիկը, ցույց տալով Նորքի անտառների վրա թռչող ինքնաթիռը։

— Դա ծուխ չէ...

— Հապա ի՞նչ է,— հարցրեց Անահիտը։

— Օդանավը շաղ է տալիս զանազան քիմիական նյութեր, որպեսզի ծառերի վրա բույն դրած լվիճները և ուրիշ վնասատուներ ոչնչանան և անտառներին չվնասեն։ Օդանավերը ուրիշ մեծ գործեր էլ են կատարում։

— Ի՞նչ մեծ գործեր...

*— Է՜, բալի՛կ ջան, սև աղետից օդանավը մեզ փրկեց...— միջամտեց տատիկը, որ մինչ այդ լուռ լսում էր խոսակցությունը։*

*— Սև աղետի՞ց...—բացագանչեցին Անահիտն ու Սենիկը,— դա ի՞նչ է...*

*— Կար ժամանակ, որ գյուղացիների ամբողջ աշխատանքը ամեն րոպե վտանգի տակ էր։ Մեկ էլ տեսար մորեխը սև ամպի նման գալիս, ծածկում էր արևը, նստում դաշտի վրա ու ոչնչացնում էր ամեն ինչ,— բացատրեց հայրը։ Դրանից հետո սով ու համաճարակ էր լինում։*



*Անահիտն ու Սենիկը հափշտակությամբ լսում էին, թե ինչպես սովետական օդաչուները, աշխարհում առաջին անգամ պայքարի դուրս եկան մորեխի դեմ։ Նրանք հարձակվեցին գետերի, լճերի ու ճահիճների եղեգնապատ կղզյակների ու ափերի վրա, որտեղ ապրում են մորեխները, և թունավոր փոշի շաղ տալով ոչնչացրին նրանց բները։*

*Հետո Սենիկն ու Անահիտն իմացան, որ հիմա օդանավով մարդիկ սնուցում են բույսերը՝ զանազան պարարտանյութեր շաղ տալով նրանց վրա, պաշտպանում ու փոշոտում են պտղատու և խաղողի այգիները, բամբակենին ու շաքարի ճակնդեղը, օգնություն են ցույց տալիս անասնապահներին, որոնք շատ անգամ լեռնային արոտավայրերում օդանավի միջոցով են կապ պահպանում կոլտնտեսությունների ու սովխոզների հետ։*

*Ինչեր ասես որ չպատմեց հայրը օդաչուների և օդանավերի մասին։ Նրանք ձկնառատ վայրերից կենդանի ձկներ են փոխադրում գյուղերը՝ լճերում ու ավազաններում բազմացնելու համար, հրդեհից պաշտպանում են անտառները, ճահիճներում ոչնչացնում են մոծակներին, որ մալարիա հիվանդությունը չտարածեն, ջրում են դաշտերն ու այգիները։*

*Հաջորդ օրը Սենիկը պիոներական օղակի անդամներին ոգևորությամբ պատմում էր լսածը։ Պիոներները մեծ հետաքրքրությամբ լսում էին նրան։ Միայն Աշոտը, որի հորեղբայրն օդաչու էր, չզարմացավ։*

*Տղաները որոշեցին խնդրել Աշոտի հորեղբորը՝ իրենց տանել օդանավակայան։ Օդաչու Արտաշեսը սիրով ընդառաջեց երեխաների ցանկությանը։*

*Օդանավակայանում մեծ իրարանցում էր տիրում։ Մարդիկ անհամբեր սպասում էին ինչ-որ օդանավի, որը բերելու էր տասը հազար ուղևոր։ Կոլտնտեսականները եկել էին դիմավորելու իրենց հյուրերին։*

*«Տասը հազար ուղևոր մի օդանավի մե՞ջ», մտածում էր Սենիկը։ Նա չէր կարողանում պատկերացնել, թե այդ օդանավն ինչքա՜ն մեծ պետք է լինի, որ այդքան ուղևոր փոխադրի...*

*Երկնքում հանկարծ հռնդյուն լսվեց։ Քիչ հետո շրջանաձև թռիչք կատարելով, սրընթաց ցած իջավ ուղևորներով ծանրաբեռնված օդանավը։*

*Օդանավից առաջինը դուրս եկավ օդաչուն։*

*— Բարի գալո՜ւստ, բարի գալո՜ւստ,— բացագանչեցին բոլորը։*

*Քիչ հետո օդանավից դուրս բերեցին տասը հազար հավի ճուտ, որոնք իրենց ճվճվոցով լցրին օդը։*

*— Ա՛յ քեզ տարօրինակ ուղևորնե՜ր...*

*Երեխաները ուրախ ծափ տվին ու ծիծաղեցին։*

*Արտաշեսը պիոներներին ծանոթացրեց օդաչուների հետ և հայտնեց նրանց, որ երեխաները հետաքրքրվում են օդաչուների կյանքով և նրանց աշխատանքով։ Ապա նա երեխաների հետ դաշտ դուրս եկավ ու ցույց տվեց նրանց բոլոր տեսակի օդանավերը։ Հետո նրանք օդանավ նստեցին...*

# ԾՈՒՅԼ ԾԱՏՈՒՐԸ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Դպրոցի զանգը բարձր ղողանջեց,
Աշակերտներին դասարան կանչեց.



Երբ լռեց ձայնն ու շշուկը վերջին,
Դասատուն կարդաց անունն առաջին.
— Արամյան Ծատուր... այսօր էլ չկա,
Վատ է, տասն օրում երկու բացակա.
Նա սկսել է դասերից փախչել,
Ծնողին պետք է իմաց տալ, կանչել,—
Ասաց տխրադեմ ու գրչով կամաց
Գծեց Ծատուրի ազգանվան դիմաց:
Իսկ Ծատուրն ահա կանաչ պուրակում
Նստած իր տետրի թերթերն է պոկում...
—Ինչո՞ւ ես պատռում այդպես տաքացած,—
Խոսեց մի «երկուս» սաստիկ բարկացած,—
Մենք «երկուսներս» քեզ ի՞նչ ենք արել,
Դու ես հավաքել մեզ այստեղ բերել:
Դու ես ցանկացել և խնդրել, որ մենք
Քեզ հավատարիմ ընկերներ լինենք:
Հիմա ի՞նչ եղավ, որ չես ճանաչում,
Մեզանից այդքան հեռու ես փախչում...

Երբ «գործն» ավարտեց, շտապեց նա տուն.
Նրան դիրկն առավ մայրիկը իսկույն.
—Ծատո՛ւր ջան, ինչո՞ւ դասից շուտ եկար.
—Մեր հայոց լեզվի դասատուն չկար...
Մայրը հավատաց, էլ չբարկացավ:
Անցավ երեք օր, չորս, հինգ օր անցավ.
Մի օր էլ նորից դասերը թողած,
Դպրոցից եկավ տղան գլխաբաց...
Երբ դուռը բացվեց ու մտավ նա տուն,
Նրա դեմն ելավ մայրիկը իսկույն:
—Ծատուր ջան, այսօ՞ր ինչու շուտ եկար.
—Գլուխս է ցավում, այնտեղ օդ չկար...
—Դե, պառկիր, գնամ շուտ բժիշկ կանչեմ:
—Չէ, ոչի՛նչ, կանցնի, այնքան հիվանդ չեմ:
—Կամ դպրոց զանգ տամ, հայտնեմ այդ մասին:
—Չէ, վաղը մի կերպ կգնամ դասի...
—Իսկ պայուսա՞կդ ուր է, սիրելի՛ս...
—Է՜, մայրի՛կ, ի՜նչ շատ հարցեր ես տալիս...

Ավելի լավ է դասից չփախչել,
Քան գլխիդ թափեն այդքան շատ հարցեր:



# ՄՈՐ ԲԱԼԻԿԸ

*ԱՐՇԱՎԻՐ ՔՈՉԱՐՅԱՆ*

Փոքրիկ Վաչեն դպրոցական
Դեռ ոչ մի օր, ոչ մի անգամ
Մենակ դպրոց չէր գնացել,
Կամ դպրոցից վերադարձել:
Նրան միշտ էլ, ճամփով սովոր
Ուղեկցել է պապն ալևոր:
Մինչդեռ Համոն նույն տարիքին,
Թեև ունի և՛ պապ, և՛ տատ,
Տուն է գալիս ժամանակին
Մենակ, ինչպես հասուն մի մարդ:
Բայց մի օր էլ այնպես եղավ,
Որ դասերը շուտ վերջացան:
Վաչեն եկավ Համոյի մոտ,
Խնդրեց նրան որպես ծանոթ.
—Երբ տուն գնաս, պապիս կասես,
Որ իրեն եմ սպասում ես:
—Ո՛չ, չեմ ասի ես այդ մասին,
Ամոթ է քեզ, Վաչե՛, ամո՛թ,
Արի գնանք մենք միասին,
Մարդն էլ այդքան լինի վախկո՞տ:
Ա՛յ, տեսնում ես խաչմերուկում
Լուսաֆորի գույները վառ.
Դեղին լույսն է ազդարարում՝
Անցնել ճամփան զգուշաբար,
Կարմիր լույսը, որպես արգելք,
Ասում է մեզ՝ դեռ սպասեք.
Միայն կանաչ լույսի դեպքում՝
Վտանգ չկա խաչմերուկում:
Նրանք նորից առաջ անցան.
Պատահեցին մի նոր անցման.
Համոն նորից դարձավ նրան.
—Մինչ մայթից մայթ անցնես առաջ,
Միշտ նայիր ձախ, գնա արագ.
Երբ փողոցի մեջտեղ հասնես,
Հարկավոր է, որ աջ նայես,
Թե համոզվես՝ վտանգ չկա,
Այն ժամանակ ազատ գնա:
...Ու անվտանգ, երբ հասան տուն,
Այսպես ասաց Վաչեն մտքում.
—Մի՞թե այսքան հեշտ է եղել
Ճանապարհով մենակ քայլել...
Այդ օրվանից մինչև հիմա
Չի ուղեկցում պապը նրան:

# ԱՄԵՆ ՕՐ ԱՌԱՎՈՏՅԱՆ

*Ռ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ*

*Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ*

— Սասո՛ւն, վե՛ր կաց, ուշ է,— մի քանի անգամ կրկնեց մայրը:

Մինչև դասի սկիզբը կես ժամ էր մնացել. իսկ այդ կես ժամվա ընթացքում պետք էր հագնվել, լվացվել, նախաճաշել: Սասունը լսել էր ժամացույցի զանգի ձայնը, բայց ծուլանում էր անկողնուց վեր կենալ:

Վերջապես նա ելավ տեղից և սկսեց արագ-արագ հագնվել: Ապա նա լվացվելու համար տաք ջուր պահանջեց, ոտքի վրա նախաճաշեց և պայուսակը վերցնելով, դուրս եկավ տնից:



Եվ այսպես համարյա ամեն օր:

Սասունը դպրոցում լավ էր սովորում. բոլոր առարկաներից «5» գնահատական էր ստանում, բացի ...ֆիզկուլտուրայից: Ֆիզկուլտուրայի դասերից նա հաճախ բացակայում էր: Մասնակցած ժամանակ էլ ամենապարզ վարժությունները անգամ չէր կարողանում կատարել և մի կերպ «3» էր ստանում:

Եկավ գարունը: Սկսեցին նախապատրաստվել քննություններին: Մի քանի աշակերտ ամեն օր հավաքվում էին Սասունենց տանը, միասին կրկնում անցածը:

Մի օր, պարապմունքից հոգնած երեխաները սկսեցին կատակներ անել: Ալբերտը նկատեց բակի անկյունում ընկած տասը կիլոգրամանոց կշռաքարը, մոտեցավ ու մի ձեռքով բարձրացրեց: Մոտեցան նաև Սուրիկը, Միսակը, Թելմանը և մի քանի անգամ փորձելուց հետո դժվարությամբ կարողացան բարձրացնել:

— Հիմա էլ դու փորձիր, Սասո՛ւն,— ասացին ընկերները:

— Չէ, չեմ կարող,— առարկեց Սասունն ու մի կողմ քաշվեց:

— Պետք է փորձես,— պնդեցին ընկերները:

Ճար չկար: Սասունը մոտ եկավ, բայց հազիվ կարողացավ կշռաքարը տեղից կտրել: Ընկերները ծիծաղեցին:

Ապա սկսեցին քար նետել: Սասունն այստեղ էլ բոլորից ետ մնաց:

— Չեղա՛վ, չեղա՛վ,— ասաց Ալբերտը.— ահա թե ինչ է նշանակում ֆիզկուլտուրայով չզբաղվել, առավոտյան լիցքային վարժություններ չկատարել:

Հաջորդ օրը ֆիզկուլտուրայի դասից առաջ Սուրիկն այդ բանը պատմեց բոլորին: Ներկա էր նաև ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Հակոբյանը:

— Չի ամաչում. դեռ ընկեր Հակոբյանենց բակում էլ ապրում է,— ասացին ընկերներն այս ու այն կողմից:

Դասերից հետո Սասունը մենակ էր տուն գնում: «Ճիշտ են ասում ընկերները,— մտածում էր նա.— բայց ոչի՛նչ, ես կսկսեմ պարապել ու բոլորից ուժեղ կդառնամ»:

Եվ իրոք Սասունն սկսեց պարապել: Ամեն օր դասերից հետո նա փորձում էր բարձրացնել տասը կիլոգրամանոց կշռաքարը: Փորձում էր մի անգամ, երկու, երեք... հարյուր անգամ, բայց բարձրացնել չէր հաջողվում: Սասունն ուզում էր բոլորից ծածուկ պարապել և ընկերներին հանկարծակիի բերել:

Այդ բանը չվրիպեց ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Հակոբյանի աչքից:

Մի անգամ տեսնելով Սասունին կշռաքարը բարձրացնելիս, դասատուն գնաց նրա մոտ: Նկատելով ընկեր Հակոբյանին Սասունը կշռաքարից մի կողմ քաշվեց:

— Ինչո՞վ ես զբաղված:

— Կշռաքարն էի փորձում բարձրացնել,— կարմրելով պատասխանեց Սասունը:

Դասատուն նստեց ծառի տակ:

— Սասո՛ւն,— նրան իր կողքին նստեցնելով ասաց ընկեր Հակոբյանը,— լավ է, որ դու ուզում ես ուժեղ դառնալ. բայց վատն այն է, որ դու չգիտես, թե ինչպես պետք է պարապել, ու ընկերներիդ խորհուրդն էլ չես լսում:

Դասատուն և աշակերտը երկար խոսեցին: Հակոբյանը խոսեց ֆիզկուլտուրայի նշանակության և ամենօրյա առավոտյան լիցքային վարժությունների անհրաժեշտության մասին: Նա բացատրեց, որ արթնանալուց հետո անմիջապես պետք է վեր կենալ անկողնուց և սկսել վարժությունները: Նախ պետք է կատարել ուսագոտու և ձեռքերի, ապա կողքի, որովայնի ու մեջքի և վերջապես ոտքերի մկանների վարժություններ: Դրանից հետո պետք է անցնել սրտի աշխատանքը և շնչառությունը կարգավորող շարժումներին ու սառը ջրով շփվելուն: Ապա նա Սասունին տվեց լիցքային վարժությունների ծրագիրը:

— Այսօրվանից կշռաքարը մոռացիր,— վերջացրեց ֆիզկուլտուրայի դասատուն.— իսկ վարժությունները ոչ մի օր բաց չթողնես:

Սասունն անչափ գոհ էր զրույցից և հենց հաջորդ օրվանից գործի անցավ: Ճիշտ է, ամեն ինչ միանգամից հարթ չընթացավ. որոշ վարժություններ չէր կարողանում կատարել, դժվարանում էր: Առանձնապես տհաճ էր սառը ջուրը: Բայց Սասունը չէր ընկճվում. «Անհրաժեշտ է կամք ու համառություն»,— հիշում էր դասատուի խոսքերը:



Հակոբյանը մի քանի օր շարունակ հետևում էր նրան, սխալներն ուղղում:



Սասունը փոխադրվեց յոթերորդ դասարան: Նա շարունակում էր ամեն օր լիցքային վարժություններ կատարել: Ինչ խոսք, որ նա միանգամից չուժեղացավ, բայց արդեն զգում էր իր մեջ կատարված փոփոխությունը: Իսկ տարեվերջի սպարտակիադայի ժամանակ 200 մետր վազքից՝ ջոկատում երրորդ տեղը գրավեց:

Այս ամռանը Սասունն ավելի շատ պարապեց: Լայն ու ընդարձակ բակում ցատկում էր, վազում, մարմնամարզական վարժություններ կատարում: Մի օր էլ նա փորձեց բարձրացնել կշռաքարը: Մի տարուց ավելի է, որ ձեռք չէր տվել: Նա հեշտությամբ վերցրեց այն ու բերեց բակի կենտրոնը: Ապա ուժերը լարեց ու կշռաքարը գետնից կտրելով՝ հանգիստ վեր բարձրացրեց:



եկավ սեպտեմբերի մեկը։ Բոլորի հետ միասին կրկին դպրոց գնաց Երևանի № 63-րդ դպրոցի 8-րդ «ա» դասարանի աշակերտ Սասուն Պասկևիչյանը։ Տեսնելով Սասունի առողջ կեցվածքը՝ ընկերներն ուրախացան։ Ոմանք էլ կատակեցին.

— Սասունն իսկական Սասմա Մհեր է դարձել։

— Այս տարի ջոկատի չեմպիոնը կդառնա,— ասաց Սուրիկը։

— Իսկ լիցքային վարժությունները շարունակո՞ւմ ես կատարել, — հարցրեց Ալբերտ Մինասյանը։

— Այո՛, ամեն օր առավոտյան։

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ՀԵՏԱՔՐՔՐԱՇԱՐԺ ԲՈՒՍԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ»

Մենք դուրս ենք գալիս դաշտ՝ զբոսանքի կամ մտնում ենք անտառները և շատ գեղեցիկ բույսերի ենք հանդիպում. և՛ բարձրահասակ ու բազմատեսակ ծառերի, և՛ իրարից տարբերվող դաշտային խոտերի ու ծաղիկների։ Այդ մասին պարզ ու հասկանալի պատմում է Ա. Վ. Ցինգերն իր «Հետաքրքրաշարժ բուսաբանություն» գրքում։ Օրինակ՝ էվկալիպտ ծառը, որի հայրենիքն է Ավստրալիան։ Աշխարհում 600 տեսակ էվկալիպտ կա։ Այդ ծառի բարձրությունը հասնում է 150 մետրի։ Աճեցնում են ճահճոտ վայրերում, ճահիճներ չորացնելու և մալարիա հիվանդությունը կանխելու համար։ Էվկալիպտի բունը հիանալի շինափայտ է։ Նրանից դեղորայք են պատրաստում։ Միայն Վրաստանում վերջերս միլիոնավոր էվկալիպտներ են տնկվել։




Մեզ ամենքիս միշտ էլ գրավում են վարդերը։ «Հետաքրքրաշարժ բուսաբանություն» գրքում հեղինակը տալիս է նաև վարդերի պատմությունը։ Վարդի հայրենիքը եղել է հին Պարսկաստանը։ Այնտեղից նա տարածվել է ուրիշ երկրներ։ Դեռ հին Հռոմում մարդիկ հյուրասիրությունների ժամանակ վարդերով ողողել են սեղանակիցներին։ Վարդն այժմ տարածված է շատ երկրներում։ Սովետական Միության հարավային մարզերում վարդի պլանտացիաներ կան։ Այդ հիանալի ծաղիկն ունի ավելի քան 2000 տեսակ, որոնցից պատրաստում են բուժիչ նյութեր։

«Հետաքրքրաշարժ բուսաբանությունը» կարևոր տեղեկություններ է տալիս նաև աֆրիկական բաոբաբ կոչվող ծառի մասին։ Բաոբաբի բնի տրամագիծը հասնում է 12 մետրի։ Պատկերացրեք, թե դա ինչպիսի՜ հսկա է։ Բաոբաբը ապրում է հազարավոր տարիներ։ Նրա հսկայական բները փորելով, աֆրիկացիները իրենց համար բնակարաններ են կառուցում։

Մի ուրիշ բույս՝ շիկատակը սև, փայլուն, քաղցր պտուղներ ունի։ Բայց այդ պտուղները թունավոր են և եթե մարդ ուտի, կարող է մեռնել։ Շիկատակից ստացվում է ատրոպին դեղը։ Շիկատակ բույսը հին հռոմեացիներն անվանել են ատրոպա, որը նշանակում էր մահվան աստվածուհի։

Այս գրքում տեղեկություններ կան նաև անչար ծառի մասին։ Անչարը թունավոր չէ և ոչ էլ աճում է անապատում։ Անչարն ունենում է սովորաբար 40 մետր բարձրություն և արևադարձային անտառների զարդն է։

Հաճույքով է կարդացվում նաև ամազոնյան վիկտորիա կոչվող բույսի մասին, որը վիթխարի տերևներ ունի։ Ամեն տարի Հարավային Ամերիկայի Ամազոն գետի ափերին աճած վիկտորիայի տերևներով լցվում է հոսող ջրի երեսը։ Վիկտորիայի տերևն այնքան լայն ու ամուր է, որ նրա վրա մարդ կարող է նստել։ Այդ տերևը կարող է լողալ ջրի երեսին և կրել 75 կիլոգրամ ծանրություն։ Վիկտորիան այժմ ծաղկում է նաև մեր հայրենիքի բուսաբանական այգիներում։

Ցինգերը հետաքրքիր տեղեկություններ է տալիս նաև բույսերի մի շարք զարմանալի հատկությունների մասին։

Կարդացեք «Հետաքրքրաշարժ բուսաբանությունը» և նոր ու բազմակողմանի գիտելիքներ ձեռք բերեք բուսական աշխարհի մասին։

Ց. ՇՈՂԵՆՑ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՉԱՅՆՎՈՐԴ

1. Պետության երաժշտական խորհրդանիշը, 2. Սովետական նկարիչ՝ «Հանգիստը մարտից հետո» նկարի հեղինակը, 3. Ռևոլյուցիոն երգ, 4. Հայկական օպերա, 5. Ռուս մեծ նկարիչ՝ «Առավոտը սոճիների անտառում» նկարի հեղինակը, 6. «Աշխարհի դեմոկրատական երիտասարդության հիմնի» հեղինակը, 7. Ռուս ականավոր նկարիչ՝ «Դյուցազունները», «Ալյոնուշկա» նկարների հեղինակը, 8. Պար, 9. Երաժշտական խոշոր ստեղծագործություն, 10. Երաժշտախումբ, 11. Կովկասյան պար, 12. Հայ մեծ դերասան, 13. Ռուս նշանավոր կոմպոզիտոր, 14. Ժողովրդական տոն, բացօրյա խաղերով, 15. Օպերայի, օրատորիայի և այլ ստեղծագործությունների գրական տեքստը:



*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ծնվում է նա լճակում,
Ոտքեր չունի, պոչ ունի.
Մեծանում է ցամաքում,
Ոտքեր ունի, պոչ չունի:

Մի խողովակ
Ծայրերը փակ.
Շոգին լիքն է,
Ցրտին դատարկ:

Ատամները իրար մոտ
Մի բերան է, մի ծնոտ:
Միշտ կրծում է, միշտ կտրում,
Բայց բե երբեք չի ուտում:

Թե կողերը տաշեն նրա,
Նա ավելի կլայնանա.
Իսկ թե ծայրից կտրեն էլի,
Նա ավելի կերկարի:

Պոչը երկար ճողի մեջ է,
Իսկ գլուխը ծովի մեջ է:
Գիշեր-ցերեկ գնում, գնում,
Բայց էլի նույն տեղն է մնում:

Ի՞նչ զգեստ է՝
Չենք կարում,
Մեր վրայից
Չենք հանում:

*Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ*

## ՍՈՎՈՐԻՐ ԱՅՍ ԽԱՂԵՐԸ

### ՀԱՐՎԱԾ ԳՆԴԱԿԻՆ

Մուշեղը հրապարակում մի գիծ քաշեց, ապա նրանից տասներկու քայլ հեռավորության վրա դրեց գնդակը:

— Վաշի՛կ, եկ այստեղ. կանգնիր գծի վրա:

Վաշիկը կանգնեց գծի վրա: Մուշեղը՝ կապելով նրա աչքերը ասաց.

— Գնա և ոտքով հարվածիր գնդակին:

Վաշիկը գնաց: Նա ոտքը ետ տարավ ու հարվածեց. բայց իզուր: Ոտքը անցնում էր գնդակի մոտով և չէր դիպչում: Բոլորը ծիծաղում էին:

Հետո խաղը կատարեցին օղակի մյուս պիոներները: Երկուսին հաջողվեց հարվածել գնդակին:



### ‘ՆՍՏԻՐ ԱԹՈՌԻՆ’

Մուշեղը գծից տասը քայլ հեռավորության վրա դրեց մի աթոռ:

— Ձեզանից ո՞վ կարող է՝ աչքերը կապած վիճակում գնալ, մի պտույտ կատարել աթոռի շուրջը և ապա նստել նրա վրա:

— Ես,— առաջ գալով համարձակ ասաց Խաչիկը:

Մուշեղը կապեց նրա աչքերը: Խաչիկը քայլեց և լավ կատարեց խաղը:

— Նշանակում է Խաչիկը լավ հիշողություն և լավ աչքաչափ ունի,— ասաց Մուշեղը:

Եվ այսպես երեխաները շարունակեցին խաղալ այս խաղը:

### ՋՈՒՐ ԼՑՐՈՒ

— Մուշե՛ղ, մի խաղ էլ ես եմ ուզում կազմակերպել,— օղակավարին դիմելով ասաց Գուրգենը:

Նա իրենց կանգնած տեղից յոթ-ութ քայլ հեռավորության վրա դրեց մի ափսե, ապա դառնալով ընկերներին ասաց.

— Այս բաժակի ջուրը պետք է տանել և լցնել ափսեի մեջ, միայն թե աչքերը կապած. կարո՞ղ եք:

— Ես կարող եմ,— պարծեցավ Վրույրը:

— Դե, փորձիր տեսնենք:

Վրույրի աչքերը կապեցին: Նա սկսեց քայլել, հասավ ափսեի մոտ և ջուրը լցրեց հատակին:

— Հետաքրքիր խաղ է, շարունակենք խաղալ,— ասաց օղակավար Մուշեղը:

*Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 12231։ Պատվեր 1075։ Տիրաժ 5000։ Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 28.VIII.1954 թ.։*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող., № 65, 1954 թ.։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## Հայ երաժշտության հանճարը

1914 թվականի հունիս ամսին Փարիզում տեղի էր ունենում երաժշտության համաշխարհային կոնգրեսը: Հավաքվել էին աշխարհի բոլոր երկրների նշանավոր երաժշտագետները ու կոմպոզիտորները: Ամեն մեկը պատմում էր իր ժողովրդի երաժշտության մասին: Եվ ահա հերթը հասնում է հայ ժողովրդի ներկայացուցչին՝ Կոմիտասին: Նրա զեկուցումները այնքան մեծ հետաքրքրություն են առաջացնում, որ կոնգրեսի մասնակիցների խնդրանքով նա կարդում



է երրորդ չնախատեսնված դասախոսությունը: Մեծ հայրենասերը մինչ այդ եղել էր Գերմանիայի, Ֆրանսիայի, Շվեյցարիայի շատ քաղաքներում և հանդես եկել զեկուցումներով ու համերգներով: Ամենուրեք մեծ գովեստով էին խոսում հայ երաժշտական արվեստի և նրա տաղանդավոր ներկայացուցիչ Կոմիտասի մասին: Փարիզի Սորբոնի համալսարանի երաժշտագետ Լուի Լալվան գրել է. «Փարիզը Կոմիտասին շշլացրեց, Փարիզն է Կոմիտասի երգերով շլացած»:

Կոմիտասը՝ Սողոմոն Գևորգի Սողոմոնյանը, խորապես սիրում էր հայ աշխատավոր ժողովրդին, նրա երգերը: «Ժողովուրդն է ամենամեծ ստեղծագործողը, գնացեք և սովորեցեք նրանից», ասում էր Կոմիտասը: Նա շրջում էր Հայաստանի գյուղերը և իրեն հատուկ ոգևորությամբ գրի էր առնում ժողովրդական երգերն ու պարեղանակները:

Հայ գյուղացու խրճիթում առաջին անգամ նրա ականջին հասած ժողովրդական թովիչ երգերն էին, որ դարձան Կոմիտասի ստեղծագործությունների վճիտ աղբյուրը: Նա մշակեց և հորինեց գեղջուկի աշխատանքային երգերը՝ հորովելները, գութանի, կալի, քաղհանի և այլ երգեր: Նա հավաքեց ու մշակեց ավելի քան երեք հազար երգ ու պարեղանակ, բայց դրանց մեծ մասը մեզ չի հասել, որովհետև ոչնչացվել է թյուրք ջարդարարների ձեռքով:

Կոմիտասը երազում էր հիմնել կոնսերվատորիա և հայ մանուկներին երաժշտություն սովորեցնել: Մեծ երաժշտագետի այդ նվիրական ցանկությունը իրականացավ միայն Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց հետո:

Կոմիտասը մեռավ 1935 թվականին. 66 տարեկան հասակում:

## Հովհաննես Հովհաննիսյան

Ո՞ր ճանապարհով գնալ: Մեկը տանում է դեպի անձնական բարօրություն, իսկ մյուսը՝ փշալի, բայց ազնիվ ու վսեմ գործունեության ասպարեզ:

Նա ընտրեց երկրորդ ճանապարհը, որը տանում էր դեպի ժողովուրդը:

Իր ոտանավորներից մեկում բանաստեղծը գրում է.

Աղքատություն ես սիրեցի
Խեղճի լացը, հառաչանք,
Ես քնարս նվիրեցի
Վիշտ երգելու և տանջանք:

Մինչև իր կյանքի վերջը բանաստեղծը հավատարիմ մնաց իր ժողովրդին: «Հատիկը», «Գյուղի ժամը» և բազմաթիվ այլ բանաստեղծություններում նա երգեց հայ գյուղացու չարքաշ վիճակը, նրա ծանր աշխատանքը, երգեց հայրենի բնությունը: Բայց Հովհաննիսյանը միայն տխրության երգիչ չէր: Անցյալի մռայլ իրականության մեջ բանաստեղծը տեսնում էր գալիք արշալույսի շողերը և իր սրտառուչ երգերով կոչ էր անում կռվի ելնել շահագործողների դեմ: «Դեպի վե՜ր, սարն ի վե՜ր, քաջասիրտ զինվոր», այսպես էր նա քաջալերում հուսահատվողներին:

Հայ ականավոր բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանը ծնվել է 1864 թվականին էջմիածնում, աշխատավոր գյուղացու ընտանիքում: Ընդունակ երեխան շատ կարճ ժամանակում հոր օգնությամբ դառնում է գրանանաչ: Ապա նա սովորում է էջմիածնում ու Երևանում: Տեսնելով պատանու աշխատասիրությունն ու ուսման սերը, հայրը նրան տանում է Մոսկվա, ընդունել տալիս Լազարյան ճեմարանը: Այստեղ նրա վրա բարերար ազդեցություն է թողնում իր սիրելի ուսուցիչը՝ հայտնի բանաստեղծ Սմբատ Շահազիզը:



Արծաթե մեդալով ավարտելով ճեմարանը, Հովհաննիսյանը ընդունվում է Մոսկվայի համալսարանը: Այնտեղ մի նոր աշխարհ է բացվում շնորհալի երիտասարդի առաջ:

Համալսարանի գրական խմբակի անդամները 1887 թվականին իրենց հավաքած դրամական միջոցներով լույս են ընծայում Հովհաննիսյանի ստեղծագործությունների առաջին գրքույկը: Այդ գրքով նա միանգամից ճանաչվեց բանաստեղծ: Մոսկվայում նա ուսումնասիրում է ռուսական առաջավոր գրականությունն ու կուլտուրան, սովորում է բազմաթիվ լեզուներ՝ ռուսերեն, անգլերեն, հին հունարեն, լատիներեն: Վերադառնալով Մոսկվայից Հովհաննիսյանը էջմիածնում սկսում է աշխատել որպես ուսուցիչ: Այդ տարիներին է, որ նրան աշակերտել է հայ նշանավոր բանաստեղծ Ավետիք Իսահակյանը:

Հովհաննես Հովհաննիսյանը ամբողջ սրտով ողջունեց սովետական կարգերի հաստատումը Հայաստանում և մեծ եռանդով գործի անցավ ժողովրդական կրթության ասպարեզում:

Հովհաննիսյանն ամուր թելերով էր կապված իր ժողովրդի հետ: Դրա համար էլ նրա ստեղծագործությունը այդքան մոտ է մեր ժողովրդի հոգուն: Նրա շատ բանաստեղծություններ երգերի են վերածվել և մինչև այսօր էլ երգվում են ամենուրեք:

Հովհաննես Հովհաննիսյանը մեռավ 1929 թվականի սեպտեմբերին:

ԱՌԱՏ ԲԵՐՔ



Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսից վերադարձած Ն. ՄԵԼՔՈՆՅԱՆԸ և Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԸ ընկերներին ցույց են տալիս իրենց անեցրած խաղողը Պատանի բնասերների կենտրոնական կայանում:

Ֆոտո՝ Ա. Հեքեքյանի